Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք



# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ


11

ՆՈՅԵՄԲԵՐ

1987 թ.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ
ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ԼՈՒՅՍ Է
ՏԵՍՆՈՒՄ
ԱՄԻՍԸ ՄԵԿ
ԱՆԳԱՄ
ՀԱՅԵՐԵՆ
ԵՎ
ՌՈՒՍԵՐԵՆ


## Բովանդակություն




ՀԱՅԱՍՏԱՆԻ
ԿՈՄԿՈՒՍԻ
ԿԵՆՏԿՈՄԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

ԵՐԵՎԱՆ



**Բաժիններ**

մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի՝ 52—05—58
կուսակցական կյանք՝ 52—25—43
սոցիալ-տնտեսական պրոբլեմների՝ 52—57—56
գիտության և կուլտուրայի՝ 52—99—34
գրական աշխատողներ՝ 52—66—77
58—59—94
թղթակիչ, սրբագրիչ՝ 58—86—11



# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

1987 թվականի հոկտեմբերի 21-ին տեղի ունեցավ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հերթական պլենումը: Պլենումը քննության առավ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 70-ամյակի և մի քանի ընթացիկ խնդիրների հետ կապված հարցերը:

Այդ հարցերի առթիվ զեկուցումով հանդես եկավ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովը:

Պլենումում ելույթ ունեցան ՍՄԿԿ Մոսկվայի քաղկոմի առաջին քարտուղար ընկ. Բ. Ն. Ելցինը, ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար ընկ. Ե. Կ. Լիգաչովը, ՍՍՀՄ ժողովրդական վերահսկողության կոմիտեի նախագահ ընկ. Ս. Ի. Մանյակինը, ՍՄԿԿ Աստրախանի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Լ. Ա. Բորոդինը. ՀԱՄԿԽ-ի նախագահ ընկ. Ս. Ա. Շալաևը, ՍՄԿԿ Տյումենի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Գ. Պ. Բոգոմյակովը, Ուկրաինայի կոմկուսի Պոլտավայի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Ֆ. Տ. Մորգունը, ՍՄԿԿ Մոսկվայի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Վ. Կ. Մեսյացը, ՍՄԿԿ Պերմի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Բ. Վ. Կոնոպլյովը, ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի ԱՄՆ-ի ու Կանադայի ինստիտուտի դիրեկտոր ընկ. Գ. Ա. Արբատովը, Ֆրանսիայի Հանրապետությունում ՍՍՀՄ արտակարգ ու լիազոր դեսպան ընկ. Յա. Պ. Ռյաբովը, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահ ընկ. Ն. Ի. Ռիժկովը, ժողովրդական դեպուտատների Մոսկվայի քաղաքային սովետի գործկոմի նախագահ ընկ. Վ. Տ. Սայկինը, ՌՍՖՍՀ Մինիստրների խորհրդի նախագահ ընկ. Վ. Ի. Վորոտնիկովը, Ուկրաինական ՍՍՀ «Կրասնոդոնուգոլ» արտադրական միավորման «Մոլոդոգվարդեյսկայա» ածխահանքի հանքափորների կոմպլեքսային բրիգադի բրիգադավար ընկ. Ա. Յա. Կոլեսնիկովը, ՍՍՀՄ պետական անվտանգության կոմիտեի նախագահ ընկ. Վ. Մ. Չեբրիկովը, ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար ընկ. Ա. Ն. Յակովլևը, ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի պրեզիդենտ ընկ. Գ. Ի. Մարչուկը, ՍՍՀՄ արտաքին գործերի մինիստր ընկ. Է. Ա. Շևարդնաձեն, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահի առաջին տեղակալ, ՍՍՀՄ պետական ագրոարդյունաբերական կոմիտեի նախագահ ընկ. Վ. Ս. Մուրախովսկին, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկ. Ա. Ա. Գրոմիկոն,

Ուկրաինայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Վ. Վ. Շչերբիցկին, Լատվիայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Բ. Կ. Պուգոն, ՀամԼԿԵՄ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Վ. Ի. Միրոնենկոն, ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր կուսակցական վերահսկողության կոմիտեի նախագահ ընկ. Մ. Ս. Սոլոմենցևը, Ղազախստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Գ. Վ. Կոլբինը, Գլավմոսստրոյի «Մոսստրոյ» № 1 տրեստի կոմպլեքսային բրիգադի բրիգադավար ընկ. Վ. Ա. Զատվորնիցկին:

Եզրափակման խոսքով հանդես եկավ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովը:

Պլենումը հավանություն տվեց Մ. Ս. Գորբաչովի զեկուցման մեջ շարադրված հիմնական դրույթներին ու հետևություններին և այդ հարցի առթիվ ընդունեց համապատասխան որոշում:

Պլենումը քննարկեց կազմակերպական հարց:

Պլենումը բավարարեց ընկ. Հ. Ա. Ալիևի խնդրանքը առողջական վիճակի պատճառով կենսաթոշակի անցնելու կապակցությամբ իրեն ՍՄԿԿ Կենտկոմի Քաղբյուրոյի անդամի պարտականություններից ազատելու մասին:

Դրանով Կենտկոմի պլենումը ավարտեց իր աշխատանքը:

---

# ՀՈԿՏԵՄԲԵՐԸ ԵՎ ՎԵՐԱԿԱՌՈՒՑՈՒՄԸ. ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅՈՒՆԸ ՇԱՐՈՒՆԱԿՎՈՒՄ Է

## *ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. ԳՈՐԲԱՉՈՎԻ զեկուցումը*

## ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ, ՍՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ԵՎ ՌՍՖՍՀ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԾ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ 70-ԱՄՅԱԿԻՆ ՆՎԻՐՎԱԾ ՀԱՄԱՏԵՂ ՀԱՆԴԻՍԱՎՈՐ ՆԻՍՏՈՒՄ, 1987 թ. նոյեմբերի 2-ին

*Թանկագին ընկերնե՛ր:*

*Հարգելի արտասահմանցի հյուրե՛ր:*

*Մեզ յոթ տասնամյակ է բաժանում 1917 թվականի Հոկտեմբերի անմոռաց օրերից: Այն լեգենդար օրերից, որոնք սկսեցին հասարակական առաջադիմության, իսկական մարդկային պատմության նոր դարաշրջանի իրենց հաշվարկը: Հոկտեմբերը մարդկության հիրավի «աստեղային ժամն» է, նրա՛ այգաբացի արշալույսը: Հոկտեմբերյան հեղափոխությունը ժողովրդի հեղափոխություն է և հեղափոխություն ժողովրդի համար, մարդու համար, նրա ազատագրման ու զարգացման համար:*

*Յոթ տասնամյակը միանգամայն փոքր ժամանակահատված է համաշխարհային քաղաքակրթության բազմադարյան վերընթացի ճանապարհին, բայց մեծագործությունների մասշտաբներով պատմությունը դեռ չէր իմացել այնպիսի ժամանակաշրջան, որ մեր երկիրն անցել է մեծ Հոկտեմբերի հաղթանակից հետո: Եվ չկա ավելի բարձր պատիվ, քան նախագնացների ուղիով ընթանալը, բոլոր ուժերի, եռանդի, գիտելիքների, ընդունակությունների նվիրաբերումը հանուն Հոկտեմբերի գաղափարների ու նպատակների հաղթանակի:*

Հոբելյանը հպարտանալու պահ է: *Մեծագործություններով հպարտանալու պահ: Մանրագույն փորձություններ են վիճակվել մեզ: Եվ մենք պատվով ենք դիմացել դրանց: Ոչ միայն պարզապես դիմացել: Երկիրը պոկել ենք ավերածության ու հետամնացության ճիրաններից, դարձրել հզոր տերություն, կերպարանափոխել կյանքը, անճանաչելիորեն փոխել մարդու հոգևոր աշխարհը:*

*Ամեն կարգի դաժան գոտեմարտերում, որպիսիք միայն տեսել է XX դարը, ապահովել ենք սեփական ապրելակերպի իրավունքը, պաշտպանել մեր ապագան: Մենք լիակատար հիմքով հպարտանում ենք նաև նրանով, որ մեր հեղափոխությունը, աշխատանքը և պայքարը շարունակում են խորագույն ազդեցություն գործել համաշխարհային զարգացման բոլոր կողմերի՝ քաղաքա-*

համակարգը և բուն կոնցեպցիան: Դա կուսակցության հսկայական տեսական հարստությունն է:

Ամբողջ կուսակցության և սովետական ժողովրդի համար մեծագույն ցնցում էր Վլադիմիր Իլյիչ Լենինի վաղաժամ մահը: Վիշտն անասելի էր, կորուստը անփոխարինելի: Դա հասկանում էին բոլորը:

Վիթխարի պատմական նշանակության գործեր կային անելու: Կուսակցության ղեկավարությունը պետք է առանց Լենինի, հենվելով նրա ուսմունքի ու պատգամների վրա, որոներ-գտներ նպատակահարմար լուծումներ, որոնք ընդունակ լինեին ամրապնդել հեղափոխության նվաճումները և երկիրը դեպի սոցիալիզմ տանել այն ժամանակվա Սովետական Ռուսաստանի կոնկրետ պայմաններում:

Պատմությունը անողոք վերջնագիր ներկայացրեց նոր կարգերին. կա՛մ ամենասեղմ ժամկետում ստեղծելով իր սոցիալ-տնտեսական ու տեխնիկական բազան՝ գոյատևել և մարդկությանը տալ հասարակության արդարացի կազմակերպման առաջին փորձը, կա՛մ մարել և դարերի հիշողության մեջ մնալ լավագույն դեպքում լոկ որպես հերոսական, բայց չհաջողված սոցիալական փորձ: Կենսականորեն կարևոր, բառիս բուն իմաստով բախտանշանակ կարևորություն էր ստանում նախ և առաջ սոցիալիստական վերափոխումների արագացված տեմպերի հարցը:

Լենինից հետո ընկած ժամանակաշրջանը՝ 20-ական և 30-ական թվականները, առանձնահատուկ տեղ գրավեց սովետական պետության պատմության մեջ: Մի ինչ-որ մեկուկես տասնամյակի ընթացքում արմատական հասարակական փոփոխություններ իրականացվեցին: Այդ տարիներն այնքա՞ն տարողունակ եղան թե՛ սոցիալիստական շինարարության նպատակահարմար տարբերակների որոնումների տեսակետից, թե՛ նոր հասարակության հիմքերի ստեղծման գործում իրապես ձեռք բերվածի տեսակետից:

Դրանք մարդկային հնարավորությունների եզրին հասած համառ աշխատանքի, սուր և բազմաբնույթ պայքարի տարիներ էին: Ինդուստրացում, կոլեկտիվացում, կուլտուրական հեղափոխություն, բազմազգ պետության ամրապնդում, ՍՍՀՄ-ի միջազգային դիրքերի հաստատում, տնտեսության և ամբողջ հասարակական կյանքի կառավարման նոր ձևեր՝ այդ ամենը ընկավ հենց այդ ժամանակաշրջանին: Եվ այդ ամենը հեռուն գնացող հետևանքներ ունեցավ:

Տասնամյակներ շարունակ մենք նորից ու նորից ենք անդրադառնում այդ ժամանակին: Դա բնական է: Քանի որ այդ ժամանակ էր սկիզբ առնում, կառուցվում աշխարհի առաջին սոցիալիստական հասարակարգը: Դա պատմական մասշտաբների և պատմական նշանակության սխրանք էր: Հայրերի ու պապերի սխրանքների պատճառած հիացմունքը, մեր իսկական նվաճումների գնահատականները կապրեն հավերժ, ինչպես հենց իրենք՝ այդ սխրանքներն ու նվաճումները: Եվ եթե այսօր մենք մեր պատմությանը նայում ենք երբեմն քննադատական հայացքով, ապա միայն այն պատճառով, որ ուզում ենք ավելի լավ, ավելի լրիվ պատկերացնել ապագայի ուղիները:

Անհրաժեշտ է անցյալը գնահատել պատմական պատասխանատվության զգացումով և պատմական ճշմարտության հիմքի վրա: Դա պետք է անել, նախ, մեր պետության ճակատագրի, սոցիալիզմի ճակատագրի համար այն տարիների ունեցած հսկայական կարևորության պատճառով:

Երկրորդ. որովհետև այդ տարիները բազմամյա դիսկուսիաների կենտրոնում են գտնվում ինչպես մեր երկրում, այնպես էլ արտասահմանում, որտեղ ճշմարտության որոնումների հետ մեկտեղ հաճախ փորձեր են արվում վարկաբեկելու սոցիալիզմը որպես նոր հասարակարգ, որպես կապիտալիզմի իրական այլընտրանք: Վերջապես, մեր պատմության այդ և մնացած բոլոր ժամանակաշրջանների ճշմարտացի գնահատականները մեզ հարկավոր են առանձնապես այժմ, երբ ծավալվել է վերակառուցումը, հարկավոր են ոչ թե նրա համար, որ քաղաքական հաշիվներ մաքրվեն, կամ, ինչպես ասվում է՝ սիրտ բրբրելու համար, այլ նրա համար, որ պատշաճը մատուցվի անցյալում եղած ամբողջ հերոսականին, դասեր քաղվեն սխալներից ու վրիպումներից:

Եվ այսպես, Լենինից հետո 20—30-ական թվականների մասին: Չնայած որ կուսակցությունն ու հասարակությունը զինված էին սոցիալիզմ կառուցելու լենինյան կոնցեպցիայով, Վլադիմիր Իլյիչի հետհոկտեմբերյան ժամանա-



կաշրջանի աշխատություններով, ուղիների որոնումը ընթանում էր գաղափարական սուր պայքարում, քաղաքական դիսկուսիաների մթնոլորտում: Դրանց կենտրոնում հայտնվեցին հասարակության զարգացման արմատական պրոբլեմները, նախ և առաջ մեր երկրում սոցիալիզմի կառուցման հնարավորության հարցը:

Տեսական միտքն ու պրակտիկան որոնումների մեջ էին. ի՞նչ ուղղություններով և ի՞նչ ձևերով իրականացնել սոցիալ-տնտեսական վերափոխումները, ինչպե՞ս ապահովել սոցիալիստական հիմունքներով դրանց լուծումը պատմական այն կոնկրետ պայմաններում, որոնց մեջ գտնվում էր Սովետական Միությունը:

Օրակարգում դրվեց գործնական, կոնստրուկտիվ աշխատանքը, որը մեծագույն պատասխանատվություն էր պահանջում: Նախ և առաջ սրությամբ ծառացավ երկրի ինդուստրացման և տնտեսության վերակառուցման հարցը, առանց որի անհնարին էր սոցիալիստական շինարարությունը, պաշտպանունակության ամրապնդումը: Դա բխում էր Լենինի անմիջական ցուցումներից, նրա տեսական ժառանգությունից: Այդ նույն մակարդակի վրա և նույնպես լենինյան պատվիրաններին համապատասխան ծառացել էր գյուղում սոցիալիստական վերափոխումների հարցը:

Այդպիսով, խոսքը վերաբերում էր խոշորագույն, շրջադարձային գործերի, պրոբլեմների ու խնդիրների: Ու թեև կուսակցությունը, կրկնում եմ, ուներ այդ հարցերի վերաբերյալ լենինյան հիմնադրույթները, այդուհանդերձ, դրանց շուրջը սուր բանավեճեր ծավալվեցին:

Թերևս արժե ասել այն մասին, որ և՛ հեղափոխությունից առաջ, և՛ հետո՝ սոցիալիստական շինարարության առաջին տարիներին, կուսակցության բնավ էլ բոլոր ղեկավարները չէ, որ համակարծիք էին Լենինի հայացքներին մի շարք կարևորագույն պրոբլեմներում: Բացի այդ, լենինյան հանձնարարականները չէին կարող ընդգրկել նոր հասարակարգի կառուցման բոլոր կոնկրետ հարցերը: Վերլուծելով այն ժամանակվա գաղափարական վեճերը, պետք է նկատի ունենալ, որ մի այնպիսի երկրում, ինչպիսին այն ժամանակ Ռուսաստանն էր, հեղափոխական վիթխարի վերափոխումների իրագործումը ինքնըստինքյան դժվարագույն խնդիր էր: Երկիրը պատմական եռթի մեջ էր, կտրուկ արագանում էր նրա զարգացումը, արագորեն և խորապես կերպարանափոխվում էին հասարակական կյանքի բոլոր կողմերը:

Գաղափարական պայքարը, արտացոլելով դասակարգերի, սոցիալական խմբերի ու խավերի շահերի, ժամանակի պահանջների ու խնդիրների, պատմական ավանդույթների ամբողջ գամման և անհետաձգելի խնդիրների ճնշումը, ինչպես նաև թշնամական կապիտալիստական շրջապատի պայմանները— այդ գաղափարական պայքարը անխզելիորեն միահյուսվում էր տնտեսության, քաղաքականության մեջ, մարդկանց կյանքի բոլոր ոլորտներում տեղի ունեցող իրադարձությունների ու պրոցեսների հետ:

Մի խոսքով, այդչափ ոչ հասարակ և բուռն իրադրության մեջ կողմնորոշվելը, միակ ճիշտ կուրսը գտնելը գերդժվար էր: Գաղափարական պայքարի բնույթը զգալիորեն բարդանում էր նաև կուսակցության ղեկավարության մեջ եղած անձնական մրցակցությամբ: Հին տարաձայնությունները, որոնք առկա էին դեռևս Լենինի կենդանության օրոք, իրենց զգալ տվեցին նաև նոր իրադրության մեջ, ընդ որում՝ շատ սուր ձևով: Նման վտանգի հնարավորության մասին, ինչպես հայտնի է, նախազգուշացնում էր Լենինը: «Նամակ համագումարին» գրության մեջ նա ընդգծում էր, որ «դա մանրուք չէ կամ դա այնպիսի մանրուք է, որը կարող է վճռական նշանակություն ստանալ»: Շատ բաներում այդպես էլ ստացվեց:

Որոշ հեղինակավոր գործիչների մեջ գլուխ բարձրացրեց մանրբուրժուական էությունը: Նրանք իրենց պահեցին ֆրակցիոնաբար: Դա տենդի մեջ էր գցում կուսակցական կազմակերպությունները, շեղում կենդանի գործից, խանգարում էր աշխատել: Նրանք շարունակում էին պառակտում հրահրել նույնիսկ այն ժամանակ, երբ կուսակցության մեջ գերակշիռ մեծամասնության համար պարզ էր դարձել, որ նրանց հայացքները հակասում են լենինյան գաղափարներին ու պլաններին, որ նրանց առաջարկությունները սխալ են և կարող են երկիրը շեղել ճիշտ վերցրած կուրսից:

Դրա հետ մեկտեղ այն ժամանակամիջոցը, որի մասին խոսվում է, նաև կորուստներ բերեց: Դրանք որոշակիորեն առնչվում էին բուն հաջողությունների հետ, որոնց մասին ես ասացի: Այն ժամանակ հավատացած էին, թե խստագույն կենտրոնացումը համակողմանիորեն արդյունավետ է, որ հրամայական մեթոդները ցանկացած խնդիրների լուծման ամենակարճ, լավագույն ուղին են: Դա անդրադառնում էր մարդկանց, նրանց կենսապայմանների նկատմամբ եղած վերաբերմունքի վրա:

Առաջացավ երկրի կուսակցական-պետական ղեկավարման վարչահրամայողական համակարգ, ուժեղանում էր բյուրոկրատիզմը, որի վտանգի մասին ժամանակին նախազգուշացնում էր Լենինը: Սկսեցին ձևավորվել նաև կառավարման համապատասխան կառուցվածք ու պլանավորման մեթոդներ:

Արդյունաբերության մեջ նրա այն ժամանակվա ծավալների պարագայում, երբ բառացիորեն աչքի առաջ էին ինդուստրիալ շենքի բոլոր հիմնական օբյեկտները, կառավարման այդպիսի մեթոդները, այդպիսի համակարգը ընդհանուր առմամբ արդյունքներ տալիս էին: Սակայն կենտրոնացման ու կարգադրման նույնքան խստագույն համակարգը անթույլատրելի էր գյուղի վերափոխման խնդիրները լուծելիս:

Պետք է բացեիբաց ասել. նոր փուլում պակասում էր լենինաբար ուշադիր վերաբերմունքը աշխատավոր գյուղացիության շահերի նկատմամբ: Եվ գլխավորը՝ թերագնահատեցին այն փաստը, որ գյուղացիությունը որպես դասակարգ արմատապես փոխվել էր հեղափոխությունից հետո անցած տարիներին: Հիմնական դեմքը դարձել էր միջակ գյուղացին: Նա հաստատվել էր որպես տնտեսատեր, այդ աշխատավոր գյուղացին, որը հող էր ստացել հեղափոխությունից և մի ամբողջ տասնամյակի ընթացքում համոզվել էր, որ սովետական իշխանությունը նաև իր իշխանությունն է: Նա դարձել էր բանվոր դասակարգի հավատարիմ և հուսալի դաշնակիցը, դաշնակիցը նոր հիմունքով, գործնականում համոզվում էր, որ իր կյանքն ավելի ու ավելի է բարեփոխվում:

Ու եթե ավելի մեծ չափով հաշվի առնվեին օբյեկտիվ տնտեսական օրենքները և ավելի մեծ ուշադրություն ցուցաբերվեր այն սոցիալական պրոցեսների նկատմամբ, որ տեղի էին ունենում գյուղում, եթե առհասարակ քաղաքականապես ավելի ճշտված լիներ վերաբերմունքը աշխատավոր գյուղացիության այդ հսկայական զանգվածի նկատմամբ, որի մեծ մասը մասնակցել էր հեղափոխությանը և այն պաշտպանել սպիտակգվարդիականությունից ու ինտերվենտներից, եթե հետևողականորեն վարվեր միջակի հետ դաշինքի գիծը ընդդեմ կուլակի, ապա չէին լինի նաև այն խոտորումները, որ տեղի ունեցան կոլեկտիվացումն անցկացնելիս:

Այսօր պարզ է. այդ հսկայական գործում, որ շոշափում էր երկրի բնակչության մեծամասնության բախտը, թույլ տրվեց նահանջ գյուղացիության նկատմամբ լենինյան քաղաքականությունից: Այդ կարևորագույն և շատ բարդ սոցիալական պրոցեսի ղեկավարումը, որտեղ անչափ շատ բան կախված էր տեղական պայմաններից, իրականացվում էր առավելապես վարչական մեթոդներով: Այն համոզմունքն առաջացավ, թե բոլոր պրոբլեմները կարելի է լուծել մի հարվածով՝ շատ կարճ ժամանակամիջոցում: Երկրի ամբողջ մարզեր ու ռեգիոններ սկսեցին մրցել, թե ով ավելի արագորեն կանցկացնի լիակատար կոլեկտիվացում: Վերևից տրվում էին կամայական տոկոսային կարգադրագրեր: Կոլեկտիվացման սկզբունքների կոպիտ խախտումները համատարած բնույթ ստացան: Առանց խոտորումների գործը գլուխ չեկավ կուլակության դեմ պայքար մղելիս: Կուլակության դեմ պայքարելու ինքնին ճիշտ գիծը հաճախ այնքան լայնորեն էր մեկնաբանվում, որ ընդգրկեց նաև միջակների մի զգալի մասը: Այսպիսին է պատմական իրողությունը:

Բայց, ընկերներ, եթե ընդհանուր առմամբ գնահատենք կոլեկտիվացման նշանակությունը գյուղում սոցիալիզմի դիրքերի ամրապնդման գործում, ապա դա վերջին հաշվով սկզբունքային նշանակություն ունեցող շրջադարձ էր: Կոլեկտիվացումը նշանակում էր երկրի բնակչության հիմնական զանգվածի ամբողջ կացութաձևի արմատական փոփոխություն սոցիալիստական հիմունքներով: Կոլեկտիվացումը ստեղծեց սոցիալական հիմք ագրարային հատվածը արդիականացնելու և այն կուլտուրական տնտեսավարման ռելսերի փո-



խադրելու համար, թույլ տվեց զգալիորեն բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, ազատեց սոցիալիստական շինարարության մյուս ոլորտների համար անհրաժեշտ բանվորական ձեռքերի մի զգալի մասը: Այս ամենը պատմական հետևանքներ ունեցավ:

Այն տարիների իրավիճակի ըմբռնման համար պետք է նկատի ունենալ, որ վարչական-հրամայողական համակարգը, որը սկսել էր ձևավորվել ինդուստրացման ընթացքում և նոր ազդակ ստացավ կոլեկտիվացման ժամանակ, անդրադարձավ երկրի ամբողջ հասարակական-քաղաքական կյանքի վրա: Հաստատվելով էկոնոմիկայում՝ այն տարածվեց նաև վերնաշենքի վրա. սահմանափակելով սոցիալիզմի դեմոկրատական պոտենցիալի ծավալումը, արգելակելով սոցիալիստական դեմոկրատիայի առաջադիմությունը:

Բայց ասվածը չի բացահայտում այն ժամանակաշրջանի ամբողջ բարդությունը: Ի՞նչ տեղի ունեցավ այստեղ: Փաստորեն հետևում էր մնացել կուսակցության համար գաղափարաքաղաքական առավել լուրջ փորձությունների ժամանակաշրջանը: Միլիոնավոր մարդիկ խանդավառությամբ ներգրավվեցին սոցիալիստական վերափոխումների իրականացման աշխատանքի մեջ: Սկսեցին երևալ առաջին հաջողությունները: Եվ դրա հետ մեկտեղ այն մեթոդները, որ թելադրել էր շահագործող դասակարգերի թշնամական դիմադրության դեմ մղված պայքարի ժամանակաշրջանը, մեխանիկորեն փոխադրվում են խաղաղ սոցիալիստական շինարարության ժամանակաշրջան, երբ պայմանները արմատապես փոխվել էին: Երկրում ստեղծվում է անհանդուրժողության, թշնամության, կասկածամտության մթնոլորտ: Հետագայում այդ քաղաքական պրակտիկան ընդլայնվում և հիմնավորվում էր սոցիալիզմի կառուցման պրոցեսում դասակարգային պայքարի սրման սխալ «տեսությամբ»:

Այս ամենը կործանարար ազդեցություն գործեց երկրի հասարակական-քաղաքական զարգացման վրա, ծանր հետևանքներ ունեցավ: Միանգամայն ակներև է, որ հենց սովետական հասարակության դեմոկրատացման պատշաճ մակարդակի բացակայությունը հնարավոր դարձրեց թե՛ անհատի պաշտամունքը և թե 30-ական թվականների օրինականության խախտումները, կամայականությունն ու բռնությունները: Ուղղակի ասած՝ իսկական հանցագործություններ՝ իշխանության չարաշահման հողի վրա: Մասսայական բռնությունների ենթարկվեցին բազմահազար կուսակցականներ և անկուսակցականներ: Այսպիսին է, ընկերներ, դառը ճշմարտությունը: Լուրջ վնաս հասցվեց սոցիալիզմի գործին և կուսակցության հեղինակությանը: Եվ մենք պետք է ուղղակի ասենք այդ մասին: Դա անհրաժեշտ է սոցիալիզմի լենինյան իդեալի վերջնական և անշրջելի հաստատման համար:

Այժմ շատ են դիսկուսիաները մեր պատմության մեջ Ստալինի ունեցած դերի մասին: Նա, որպես անհատ, ծայրաստիճան հակասական է: Մնալով պատմական ճշմարտության դիրքերում՝ մենք պետք է տեսնենք ինչպես Ստալինի անվիճելի ավանդը սոցիալիզմի համար մղված պայքարում, նրա նվաճումների պաշտպանության գործում, այնպես էլ նրա ու նրան շրջապատած մարդկանց կողմից թույլ տրված քաղաքական կոպիտ սխալները, կամայականությունը, որոնք շատ թանկ նստեցին մեր ժողովրդի վրա և որոնք ծանր հետևանքներ ունեցան մեր հասարակության կյանքի համար: Երբեմն պնդում են, թե Ստալինը տեղյակ չէր անօրինականության փաստերին: Մեր ձեռքի տակ եղած փաստաթղթերը վկայում են, որ դա այդպես չէ: Թույլ տրված մասսայական բռնությունների և անօրինականության համար կուսակցության ու ժողովրդի հանդեպ Ստալինի և նրա մերձակա շրջապատի մեղքը հսկայական է ու աններելի: Դա դաս է բոլոր սերունդների համար:

Իհարկե, մեր գաղափարական հակառակորդների պնդումներին հակառակ, անձի պաշտամունքը անխուսափելի չէր: Անձի պաշտամունքը խորթ է սոցիալիզմի բնույթին, նահանջ է սոցիալիզմի հիմնարար սկզբունքներից և, այդպիսով, ոչ մի արդարացում չունի: XX և XXII համագումարներում կուսակցությունը խստագույնս դատապարտեց թե՛ հենց Ստալինի անձի պաշտամունքը և թե դրա հետևանքները: Հիմա մենք գիտենք, որ կուսակցության և պետության մի շարք գործիչների դեմ, շատ կոմունիստների և անկուսակցականների, տնտեսական ու զինվորական կադրերի, գիտնականների ու մշա-

կույթի գործիչների դեմ հարուցված քաղաքական մեղադրանքները և կիրառված բռնությունները կանխամտածված կեղծման հետևանք էին։

Շատ մեղադրանքներ հետագայում, առանձնապես կուսակցության XX համագումարից հետո, հանվեցին։ Հազարավոր անմեղ տուժածներ լիովին արդարացված են։

Բայց արդարության վերահաստատման պրոցեսը մինչև վերջ չհասցվեց և փաստորեն կանգնեցվեց 60-ական թվականների կեսերին։ Այժմ Կենտկոմի 1987 թվականի հոկտեմբերյան պլենումի որոշումներին համապատասխան հարկ եղավ վերստին անդրադառնալ դրան։ Կենտկոմի քաղբյուրոն հանձնաժողով է ստեղծել այդ հարցերին վերաբերող նոր և նախկինում արդեն հայտնի փաստերի ու փաստաթղթերի բազմակողմ քննության համար։ Հանձնաժողովի աշխատանքի արդյունքների հիման վրա կընդունվեն համապատասխան որոշումներ։

Այս ամենն իր արտացոլումը կգտնի նաև ՍՄԿԿ պատմության ուրվագծում, որի նախապատրաստումը կհանձնարարվի Կենտկոմի հատուկ հանձնաժողովին։ Մենք պետք է դա անենք, մանավանդ որ այժմ էլ դեռ հանդիպում ենք մեր պատմության ցավոտ հարցերից մի կողմ շրջվելու, դրանք լռության մատնելու, այնպես ձևացնելու փորձերի, իբր առանձնապես ոչինչ տեղի չի ունեցել։ Դրան մենք չենք կարող համաձայնել։ Դա կլիներ քամահրանք պատմական ճշմարտության նկատմամբ, անհարգալից վերաբերմունք այն մարդկանց հիշատակի նկատմամբ, ովքեր անօրինականության և կամայականության անմեղ զոհ դարձան։ Չենք կարող նաև այն պատճառով, որ ճշմարտացի վերլուծությունը պետք է մեզ օգնի լուծելու մեր այսօրվա պրոբլեմները, դեմոկրատացման, օրինականության, հրապարակայնության պրոբլեմները, բյուրոկրատիզմի հաղթահարման պրոբլեմները՝ մի խոսքով, վերակառուցման կենսական պրոբլեմները։ Ահա թե ինչու այստեղ էլ մեզ պետք են լիակատար պարզություն, հստակություն և հետևողականություն։ Ինչպես մեր վիթխարի նվաճումների, այնպես էլ անցյալի դժբախտությունների ազնիվ ըմբռնումը, դրանց լիակատար ու ճիշտ քաղաքական գնահատականը իսկական բարոյական կողմնորոշիչ կտան ապագայի համար։

Հանրագումարի բերելով Լենինից հետո եկած 20—30-ական թվականների ժամանակաշրջանի ընդհանուր արդյունքը, կարելի է այսպես ասել. մենք անցել ենք դժվարին, հակասություններով և բարդություններով լի, բայց մեծ ու հերոսական ուղի։ Ո՛չ կոպիտ սխալները, ո՛չ էլ սոցիալիզմի սկզբունքներից թույլ տրված նահանջները չէին կարող մեր ժողովրդին, մեր երկիրը շեղել այն ուղուց, որը իր ընտրությունն անելով, նա բռնեց 1917 թվականին։ Չափազանց մեծ էր Հոկտեմբերի ազդակը, չափազանց զորեղ էին սոցիալիզմի գաղափարները, որոնք տիրեցին մասսաներին։ Ժողովուրդն իրեն զգաց մեծ գործի մասնակիցը, սկսեց օգտվել իր աշխատանքի պտուղներից։ Նրա հայրենասիրությունը նոր, սոցիալիստական բովանդակություն ստացավ։

Եվ դա ամբողջ ուժով դրսևորվեց 1941—1945 թվականների Հայրենական մեծ պատերազմի դաժան փորձություններում։

Այսօր Արևմուտքում ակտիվորեն քննարկվում է պատերազմի նախօրեի իրավիճակը։ Ճշմարտությունը շաղախում են կիսաճշմարտությամբ։ Առանձնապես փութաջան են նրանք, ովքեր դժգոհ են երկրորդ համաշխարհային պատերազմի արդյունքներից՝ քաղաքական, տերիտորիալ և սոցիալական, ովքեր շարունակում են մտմտալ, թե ինչպես դրանք շտկեն։ Ուստի և շահագրգռված են գլխիվայր շուռ տալու պատմական ճշմարտությունը, նենգափոխելու պատճառ-հետևանք կապերը, կեղծելու ժամանակագրությունը։ Այս տեսանկյունից դիմում են ամեն մի կեղծիքի, որպեսզի Սովետական Միության վրա բարդեն երկրորդ համաշխարհային պատերազմի մեղքը, որի համար իբր ճանապարհ բացվեց Ռիբենտրոպ-Մոլոտովի չհարձակման պակտով։ Հարցը արժանի է, որ այդ մասին մի փոքր ավելի մանրամասն խոսվի։

Ըստ էության, երկրորդ համաշխարհային պատերազմը ողբերգական իրողություն դարձավ բնավ ոչ 1939 թվականի սեպտեմբերի 1-ին։ Ճապոնիայի կողմից հյուսիս-արևելյան Չինաստանի գրավում (1931—1932 թվականների «Մանչուրական միջադեպը»), Իտալիայի հարձակում Եթովպիայի (1935 թվական) և Ալբանիայի վրա (1939 թվականի գարուն), գերմանա-իտալական ինտերվենցիա հանրապետական Իսպանիայի դեմ (1936—1939 թվականներ), Ճապոնիայի զինված ներխուժում հյուսիսային, ապա նաև Կենտրոնական Չինաստան (1937 թվականի ամառ)՝ ահա երկրորդ համաշխարհային պատերազմի սկսված հրդեհները։

Ուրիշ հարց է, որ այն ժամանակ Արևմուտքում դեռ ձևացնում էին, իբր դա իրենց չի վերաբերում կամ վերաբերում է ոչ այնչափ, որ պաշտպան կանգնեն ագրեսիայի զոհերին։ Սոցիալիզմի հանդեպ ատելությունը, տեական հաշվարկները, դասակարգային եսակենտրոնությունը խանգարում էին սթափորեն իմաստավորելու ռեալ վտանգները։ Ավելին, ֆաշիզմին հաստատակամորեն առաջարկվում էր խաչակրաց հակակոմունիստական արշավանքում հարվածային ջոկատի առաքելություն։ Եթովպիայից և Չինաստանից հետո «խաղաղեցման» հնոցը նետվեցին Ավստրիան, Չեխոսլովակիան, սուր կախվեց Լեհաստանի, Բալթիկ ծովի և Դանուբի ավազանի բոլոր պետությունների վրա, բացեիբաց պրոպագանդա էր մղվում Ուկրաինան վերածելու «երրորդ ռայխի» ցորենարտի և անասնաբակի։ Վերջին հաշվով ագրեսիայի հիմնական հոսանքները ջրանցքավորվում էին Սովետական Միության դեմ, իսկ քանի որ մեր երկիրը բաժան-բաժան անելու միտք էին հղացել պատերազմից դեռ շատ առաջ, ապա դժվար չէ պատկերացնել, թե որքան սահմանափակ էր մեր ընտրությունը։

Ասում են, թե այն որոշումը, որ ընդունեց Սովետական Միությունը՝ չհարձակման պակտ կնքելով Գերմանիայի հետ, լավագույնը չէր։ Գուցե և այդպես է, եթե ղեկավարվենք ոչ թե դաժան իրողությամբ, այլ ժամանակի համատեքստից պոկված մտահայեցողական աբստրակցիաներով։ Եվ այդ պայմաններում հարցը մոտավորապես այնպես էր դրված, ինչպես Բրեստի հաշտության ժամանակ. դա մեր երկրի անկախ լինել-չլինելու, երկրագնդում սոցիալիզմի լինել-չլինելու հարցն էր։

ՍՍՀՄ-ը շատ բան արեց կոլեկտիվ անվտանգության համակարգ ստեղծելու և համաշխարհային սպանդը կանխելու համար։ Բայց սովետական նախաձեռնությունները արձագանք չգտան Արևմուտքի քաղաքագետների և քաղաքամոլների մեջ, որոնք սառնասրտորեն հաշիվներ էին անում, թե ինչպես ավելի ճարպկորեն սոցիալիզմը ներքաշեն պատերազմի կրակի մեջ, նրան ուղղակի բախման մեջ դնեն ֆաշիզմի հետ։

Արդեն մեր իսկ սոցիալիստական ծնունդով մերժյալ լինելով՝ մենք ոչ մի պարագայում չէինք կարող իմպերիալիզմի համար «իրավացի» լինել։ Ինչպես ես արդեն ասացի, Արևմուտքի կառավարող շրջանները, փորձելով քավել իրենց մեղքերը, ջանում են մարդկանց համոզել, թե Լեհաստանի վրա նացիստների հարձակման և դրանով իսկ երկրորդ համաշխարհային պատերազմի մեկնարկը տվեց 1939 թվականի օգոստոսի 23-ի սովետա-գերմանական չհարձակման պակտը։

Կարծես թե չէին եղել ո՛չ Հիտլերի հետ Մյունխենի համաձայնագիրը, որը տակավին 1938 թվականին ստորագրել էին Անգլիան ու Ֆրանսիան՝ ԱՄՆ-ի ակտիվ աջակցությամբ, ո՛չ Ավստրիայի անշլյուսը, ո՛չ Իսպանիայի հանրապետության խաչհանումը, ո՛չ նացիստների կողմից Չեխոսլովակիայի և Կլայպեդայի օկուպացումը, ոչ էլ 1938 թվականին Գերմանիայի հետ Լոնդոնի ու Փարիզի չհարձակման պակտերի կնքումը։ Ի դեպ, նման պակտ էր կնքել նաև նախապատերազմական Լեհաստանը։ Այս ամենը, ինչպես տեսնում ենք, լրիվ տեղավորվում էր իմպերիալիստական քաղաքականության կառուցվածքի մեջ, համարվում էր և համարվում է բնական բան։

Փաստաթղթերից հայտնի է, որ Լեհաստանի վրա Գերմանիայի հարձակման օրը («սեպտեմբերի 1-ից ոչ ուշ») որոշվել էր դեռևս 1939 թվականի ապրիլի 3-ին, այսինքն՝ սովետա-գերմանական պակտից շատ առաջ։ Լոնդոնում, Փարիզում, Վաշինգտոնում ամենայն մանրամասնությամբ գիտեին լեհական արշավանքի նախապատրաստության բոլոր խորագաղտնիքները, ինչպես գիտեին նաև այն, որ հիտլերականներին կանգնեցնելու ընդունակ միակ արգելքը կարող էր լինել անգլո-ֆրանս-սովետական ռազմական դաշինքի կնքումը 1939 թվականի օգոստոսից ոչ ուշ։ Այդ պլանների մասին գիտեր նաև մեր երկրի ղեկավարությունը, ուստի և Անգլիային ու Ֆրանսիային համոզում էր, որ անհրաժեշտ է կոլեկտիվ միջոցներ ձեռնարկել։ Մեր երկրի ղեկավարությունը

ագրեսիան խափանելու նպատակով համագործակցության կոչ էր անում նաև Լեհաստանի այն ժամանակվա կառավարությանը։

Բայց Արևմուտքի տերությունները ուրիշ հաշվարկ ունեին. ՍՍՀՄ-ին հրապուրել դաշինքի խոստումով և դրանով իսկ խանգարել մեր առաջարկած չհարձակման պակտի կնքմանը, մեզ զրկել ՍՍՀՄ-ի վրա հիտլերյան Գերմանիայի անխուսափելի հարձակմանը ավելի լավ նախապատրաստվելու հնարավորությունից։ Մենք չենք կարող մոռանալ նաև այն, որ 1939 թվականի օգոստոսին Սովետական Միությունը երկու ճակատով պատերազմի ռեալ սպառնալիքի առջև էր կանգնած, Արևմուտքում՝ Գերմանիայի հետ, իսկ Արևելքում՝ Ճապոնիայի հետ, որը արյունահեղ կոնֆլիկտ էր սանձազերծել Խալխին Գոլ գետի մոտ։

Բայց կյանքն ու մահը, արհամարհելով առասպելները, ռեալ ուղեծրեր դուրս եկան։ Բացվում էր մի նոր գլուխ՝ ամենածանրն ու ամենաբարդը նորագույն պատմության մեջ։ Սակայն այդ փուլում մեզ հաջողվեց հետաձգել գոտեմարտը թշնամու հետ, այն թշնամու հետ, որը թե՛ իրեն և թե հակառակորդին մի ընտրություն էր թողնում՝ հաղթել կամ կործանվել։

Մեզ պարտադրված ագրեսիան սոցիալիստական կարգերի կենսականության, սովետական բազմազգ պետության ամրության, սովետական մարդկանց հայրենասիրական ոգու ուժի անողոք քննությունն էր, և մենք հրով ու սրով այդ քննությունը բռնեցինք, ընկերներ։

Քննությունը բռնեցինք, որովհետև մեր ժողովրդի համար այդ պատերազմը դարձավ Հայրենական մեծ պատերազմ, քանզի այնպիսի թշնամու դեմ մղված պայքարում, ինչպիսին գերմանական ֆաշիզմն էր, կենաց ու մահու հարց էր դրված, մեր ազատ լինելու կամ ստրկանալու հարցն էր դրված։

Քննությունը բռնեցինք, որովհետև պատերազմը դարձավ համաժողովրդական։ Հայրենիքը պաշտպանելու համար ոտքի ելան ամենքը. ահելն ու ջահելը, տղամարդիկ ու կանայք, մեծ երկրի բոլոր ազգերն ու ազգությունները։ Իր առաջին մարտի մեջ մտավ նաև Հոկտեմբերի ծնունդը հանդիսացող ու սոցիալիստական կարգերի կողմից դաստիարակված սերունդը։ Զտեսնված տոկունություն և հերոսություն ռազմի դաշտում, պարտիզանների և ընդհատակայինների քաջարի պայքար ռազմաճակատի գծից այն կողմ, գրեթե ամբողջօրյա, անդուլ աշխատանք թիկունքում՝ահա թե ինչ էր մեզ համար այդ պատերազմը։

Սովետական մարդիկ կռվում և աշխատում էին՝ պաշտպանելով հայրենիքը, սոցիալիստական կարգերը, Հոկտեմբերի գաղափարներն ու գործը։ Երբ մեր ընդհանուր տուն մուտք գործեց վիթխարի դժբախտությունը, սովետական ժողովուրդը չերերաց, չկքեց՝ ո՛չ առաջին անհաջողությունների ու պարտությունների հարվածների տակ, ո՛չ էլ միլիոնավոր մահերի, տանջանքների ու տառապանքների ծանրությունից։ Պատերազմի առաջին օրվանից սովետական ժողովուրդը հաստատապես հավատում էր գալիք հաղթանակին։ Զինվորի շինել ու բանվորի արտահագուստ հագած՝ նա մարդկային ուժերի սահմաններում և այդ սահմաններից դուրս եղած ամեն ինչ արեց այդ բաղձալի օրը մոտեցնելու համար։ Ու երբ պատերազմի 1418-րդ օրը եկավ հաղթանակը, ամբողջ փրկված աշխարհը ազատ շունչ քաշեց՝ պատշաճը մատուցելով սովետական հաղթող ժողովրդին, հերոս և աշխատավոր ժողովրդին, նրա քաջարի բանակին, որը մարտերով հազարավոր կիլոմետրեր էր անցել, որոնցից յուրաքանչյուրը շատ մարդկանց կյանքի, ոչ քիչ արյան ու քրտինքի գնով էր հաղթահարված։

Հայրենական մեծ պատերազմի տարիներին ամբողջ հզորությամբ դրսևորվեց ժողովրդի ծոցից ելած ականավոր զորավարների՝ Գ. Կ. Ժուկովի, Կ. Կ. Ռոկոսովսկու, Ա. Մ. Վասիլևսկու, Ի. Ս. Կոնևի, մյուս փառաբանված մարշալների, գեներալների ու սպաների՝ ռազմաճակատների և բանակների, կորպուսների, դիվիզիաների և գնդերի, վաշտերի և դասակների հրամանատարների տաղանդը։

Հաղթանակի նվաճման մեջ իրենց դերը խաղացին պատերազմի տարիներին Ի. Վ. Ստալինի դրսևորած վիթխարի քաղաքական կամքը, նպատակասլացությունը և հաստատակամությունը, մարդկանց կազմակերպելու և կարգավարժելու կարողությունը, բայց պատերազմի գլխավոր ծանրությունը իր



վրա կրեց ժողովրդի զավակը հանդիսացող, մեծ աշխատավոր, խիզախ, իր հայրենիքը սիրող հասարակ սովետական զինվորը։ Մեծ պատիվ ու հավերժ փա՜ռք նրան։

Հայրենական մեծ պատերազմի միլիոնավոր վետերաններ այսօր էլ շարքում են, մարտականորեն մասնակցում են հեղափոխական վերակառուցման, հասարակության նորացման գործերին։ Մեր որդիական շնորհակալությունն ենք հայտնում նրանց։

Բոլոր մարտական և աշխատանքային գործերի հոգին մեր լենինյան կուսակցությունն էր։ Ռազմաճակատում, խրամատներում կոմունիստները առաջինն էին գրոհի գնում, անձնական օրինակով իրենց հետևից տանելով մյուսներին, թիկունքում վերջինն էին հեռանում հաստոցների մոտից, դաշտերից ու ֆերմաներից։ Սովետական մարդիկ, ինչպես երբեք, զգացին, որ ՀամԿ(բ)Կ-ն իրենց հարազատ կուսակցությունն է, իսկ կոմունիստները գործով են ցույց տալիս, թե ինչ է նշանակում ժողովրդի ավանգարդ լինելը, երբ մոլեգնում է պատերազմի բոցը, երբ մահու ու կենաց հարց է դրված։

Կարելի է վստահությամբ ասել. Հայրենական մեծ պատերազմի տարիները բուն կուսակցության կյանքի ամենափառավոր և ամենահերոսական էջերից են, որոնք գրված են միլիոնավոր կոմունիստների արիությամբ ու խիզախությամբ, մեծագույն ինքնանվիրումով և ինքնազոհաբերումով։ Պատերազմը ցույց տվեց, որ սովետական ժողովուրդը, կուսակցությունը, սոցիալիզմը և Հոկտեմբերը անբաժանելի են, և աշխարհում չկան այնպիսի ուժեր, որոնք կարողանային խորտակել այդ միասնությունը։

Սոցիալիզմը ոչ միայն տոկաց և սոսկ հաղթանակ չէ, որ տարավ։ Նա ամենաահեղ, ամենաավերիչ պատերազմից դուրս եկավ բարոյապես, քաղաքականապես ամրացած, ամրապնդեց իր հեղինակությունն ու ազդեցությունը ամբողջ աշխարհում։

Պատերազմի ավարտից հետո թշնամիները կանխագուշակում էին, թե մենք տնտեսապես անկում կապրենք, թե մեր երկիրը երկար ժամանակ դուրս կմնա համաշխարհային քաղաքականությունից, կարծում էին, թե մենք 50 տարի, նույնիսկ ավելի երկար ժամանակ չենք կարողանա հաղթահարել պատերազմի հետևանքները։ Բայց սովետական ժողովուրդը կարճ ժամանակամիջոցում վերականգնեց ավերված քաղաքներն ու գյուղերը, ավերակների վրա կառուցեց գործարաններ ու ֆաբրիկաներ, կոլտնտեսություններ ու սովխոզներ, դպրոցներ ու բուհեր, մշակույթի հիմնարկներ։

Եվ դարձյալ իրեն դրսևորեց սոցիալիստական պետության մեծ ուժը, կուսակցության կամքը, որի մղիչ ուժը Հոկտեմբերի հայրենիքի գերագույն շահերի ըմբռնումն էր, տոկունությունը և պրոլետարական իմաստնությունը բանվորների, որոնք իրենց ուսերին վերցրին երկրի ինդուստրիալ հզորության խաղաղ վերափոխման և ավերվածի վերականգնման գլխավոր ծանրությունը, գյուղացիության անձնվիրությունը, համբերությունը և հայրենասիրությունը, որն իր վերջին ունեցածը տալիս էր քայքայված երկիրը կերակրելու համար։ Եվ ժողովուրդների բարեկամությունը, նրանց փոխօգնությունը, պատրաստակամությունը համատեղ, եղբայրաբար օգնելու նրան, ով առանձնապես շատ էր տուժել, օգնելու ոտքի կանգնել ընդհանուր հայրենիքի այն շրջաններին, որոնց վրայով ծանր գլանիվի նման առանձնապես անխնա անցել էր պատերազմը։

Ոչ դյուրին հետպատերազմյան տարիների աշխատանքային առօրյայի հերոսությունն է մեր նվաճումների, տնտեսական ու գիտատեխնիկական առաջադիմության, ատոմային էներգիայի յուրացման, տիեզերանավերի առաջին մեկնարկների, ժողովրդի նյութական և կուլտուրական բարեկեցության աճի ակունքը։

Բայց այդ նույն ժամանակներում՝ հանուն սոցիալիզմի ժողովրդական նոր սխրագործության ժամանակներում, ավելի ու ավելի շոշափելիորեն էր իրեն զգալ տալիս մեր հասարակության նոր աստիճանի և ղեկավարման նախկին մեթոդների միջև եղած հակասությունը։

Շարունակվում էին իշխանության չարաշահումները, սոցիալիստական օրինականության խախտումները։ Թխվեցին «լենինգրադյան գործը», «բժիշկների գործը»։ Կարճ ասած, պակասում էր ժողովրդի նկատմամբ իսկական

հարցանքը։ Մարդիկ ինքնամոռաց աշխատում էին, սովորում, ձգտում նոր գիտելիքների, հաշտվում դժվարությունների և պակասությունների հետ, բայց զգում էին, որ հասարակության մեջ կուտակվում են թե՛ տագնապը և թե՛ հույսը։ Եվ այդ ամենը գրավեց հասարակական գիտակցությունը Ստալինի մահից անմիջապես հետո։

50-ական թվականների կեսերին, առանձնապես ՍՄԿԿ XX համագումարից հետո, երկրի վրայով անցավ փոփոխությունների հողմը, ժողովուրդը ոգի առավ, կենդանացավ, ավելի համարձակ ու ավելի վստահ դարձավ։ Կուսակցությունից և Ն. Ս. Խրուշչովի գլխավորած նրա ղեկավարությունից քիչ արիություն չպահանջեցին անհատի պաշտամունքի և դրա հետևանքների քննադատությունը, սոցիալիստական օրինականության վերահաստատումը։ Ներքին ու արտաքին քաղաքականության մեջ սկսեցին խորտակվել նախկին ստերեոտիպերը։ Փորձեր արվեցին դեն նետելու 30—40-ական թվականներին հաստատված՝ կառավարման հրամայողական բյուրոկրատական մեթոդները, սոցիալիզմին հաղորդելու ավելի մեծ դինամիկություն, ընդգծելու հումանիստական իդեալներն ու արժեքները, վերածնելու լենինիզմի ստեղծագործական ոգին տեսության մեջ և պրակտիկայում։

Տնտեսական զարգացման գերակայությունները փոխելու, աշխատանքի արդյունքներով անձնական շահագրգռությանը առնչվող խթանները գործի դնելու ձգտումով էին տոգորված ՍՄԿԿ Կենտկոմի 1953 թվականի սեպտեմբերյան և 1955 թվականի հուլիսյան պլենումների որոշումները։ Սկսեցին ավելի մեծ ուշադրություն նվիրել գյուղատնտեսության զարգացմանը, բնակարանային շինարարությանը, թեթև արդյունաբերությանը, սպառման ոլորտին, այն ամենին, ինչ կապված է մարդու պահանջմունքների բավարարման հետ։

Մի խոսքով, բարեփոխումներ էին տեղի ունենում թե սովետական հասարակության մեջ և թե միջազգային հարաբերություններում։ Սակայն կատարվեցին ոչ քիչ սուբյեկտիվիստական սխալներ, որոնք բարդացրին սոցիալիզմի թևակոխումը նոր փուլ, իսկ շատ տեսակետից նաև վարկաբեկեցին առաջադիմական ձեռնարկումները։ Բանն այն է, որ ներքին ու արտաքին քաղաքականության, կուսակցական շինարարության որակապես նոր խնդիրները հաճախ լուծվում էին վոլյունտարիստական մեթոդներով, քաղաքական ու տնտեսական հին մեխանիզմի օգնությամբ։ Բայց այդ ժամանակաշրջանում ձեռնարկված ռեֆորմների անհաջողությունների գլխավոր պատճառներն այն էին, որ դրանք չէին հենվում դեմոկրատացման պրոցեսների լայն ծավալման վրա։

ՍՄԿԿ Կենտկոմի 1964 թվականի հոկտեմբերյան պլենումում փոխվեց կուսակցության ու երկրի ղեկավարությունը, ընդունվեցին ներքին ու արտաքին քաղաքականության մեջ վոլյունտարիստական միտումների և շեղվածքների հաղթահարման նպատակին ուղղված որոշումներ։ Կուսակցությունը ձգտում էր հասնել քաղաքականության մեջ որոշակի կայունության, դրան հաղորդել ռեալիստական գծեր ու հիմնավորվածություն։

ՍՄԿԿ Կենտկոմի 1965 թվականի մարտյան և սեպտեմբերյան պլենումները առաջադրեցին նոր մոտեցումներ էկոնոմիկայի ղեկավարման մեջ։ Մշակվեցին և սկսեցին կենսագործվել տնտեսական ռեֆորմ, նոր շրջանների յուրացման, արտադրողական ուժերի զարգացման խոշոր ծրագրեր։ Առաջին տարիներին դա բարեփոխեց երկրի իրավիճակը։ Մեծանում էր տնտեսական ու գիտական պոտենցիալը, ամրապնդվում էր պաշտպանունակությունը, բարձրանում մարդկանց բարեկեցության մակարդակը։ Իրականացվեցին արտաքին քաղաքական շատ ձեռնարկումներ, որոնք ամրապնդեցին մեր պետության միջազգային հեղինակությունը։ Ապահովվեց ԱՄՆ-ի հետ ռազմաստրատեգիական զուգակշռություն։

Երկիրը մեծ հնարավորություններ ուներ իր զարգացման հետագա արագացման համար։ Բայց այդ հնարավորությունները օգտագործելու, դրանք գործի դնելու համար հարկավոր էին նոր արմատական փոփոխություններ հասարակության մեջ և, իհարկե, համապատասխան քաղաքական կամք։ Թե՛ մեկը և թե մյուսը պակասում էին։ Եվ նույնիսկ շատ բան այն ամենից, ինչ որոշված էր, մնաց թղթի վրա, կախվեց օդում։ Մեր զարգացման տեմպերը լրջորեն դանդաղեցին։



Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումում, XXVII համագումարում կուսակցությունը անկեղծորեն հիշատակեց ստեղծված իրավիճակի պատճառները, մերկացրեց մեր զարգացման արգելակման մեխանիզմը և տվեց դրա սկզբունքային գնահատականը։

Ընդգծվեց, որ Լ. Ի. Բրեժնևի կյանքի ու գործունեության վերջին տարիներին հետագա առաջընթացի ուղիների որոնումը շատ բանում կասեցվում էր սովորական դարձած բանաձևերի ու սխեմաների նկատմամբ հակվածությամբ, որոնք նոր իրողությունները չէին արտացոլում։ Ուժեղացավ խզումը խոսքի ու գործի միջև։ Էկոնոմիկայում աճում էին բացասական պրոցեսները, որոնք ըստ էության նախաճգնաժամային վիճակ էին ստեղծել։ Սոցիալական և հոգևոր-բարոյական ոլորտում առաջացել էին անբնականոն շատ երևույթներ, որոնք աղավաղում, ձևախախտում էին սոցիալիստական արդարության սկզբունքները, սասանում ժողովրդի հավատը դրա հանդեպ, ծնում սոցիալական խորթացում և բարոյազրկություն՝ դրա տարբեր ձևերով։ Սոցիալիզմի վեհ սկզբունքների և կյանքի ամենօրյա իրողության միջև հարաճուն հակասությունը անհանդուրժելի էր դարձել։

Կուսակցության և հասարակության մեջ առողջ ուժերը ամբողջությամբ վերցրած ավելի ու ավելի սուր կերպով էին զգում բացասական երևույթները հաղթահարելու, իրադարձությունների ընթացքը փոխելու, երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացումն ապահովելու, բարոյական մաքրման և սոցիալիզմի նորացման հասնելու հրամայական պահանջմունքն ու անհրաժեշտությունը։

Այդ սուր հասարակական պահանջմունքի պատասխանը եղան հենց Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումի առաջադրած երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացման կոնցեպցիան և ստրատեգիան, սոցիալիզմի նորացման կուրսը, որոնք տեսական ու քաղաքական զարգացում ստացան XXVII համագումարի, Կենտկոմի հաջորդ պլենումների որոշումներում և ձևակերպվեցին որպես սոցիալիստական հասարակության կյանքի բոլոր կողմերի հեղափոխական վերակառուցման գլխավոր գիծ։

Վերակառուցման գաղափարը հենվում է մեր 70-ամյա պատմության վրա, սովետական երկրում կառուցված սկզբունքորեն նոր սոցիալական շենքի ամուր հիմքի վրա, հաջորդայնությունը և նորարարությունը, բոլշևիզմի պատմական փորձը միացնում է սոցիալիզմի այժմեականության հետ։ Մենք պետք է շարունակենք ու բազմապատկենք հեղափոխության և սոցիալիզմի նախագնացների գործը։ Եվ մենք անպայման դրան կհասնենք մեր աշխատանքով, ստեղծագործաբար օգտագործելով այն սերունդների փորձը, որոնք Հոկտեմբերի ճանապարհն են հարթել մեզանից առաջ և մեզ համար։

Ընկերնե՛ր։ Մենք ընթանում ենք հեղափոխական ուղիով, իսկ այդ ճանապարհը թույլերի ու երկչոտների համար չէ. դա ճանապարհ է ուժեղների և համարձակների համար։ Միշտ այդպիսին է եղել սովետական ժողովուրդը՝ թե՛ մեծագույն սոցիալական վերափոխումների տարիներին, թե՛ պատերազմական փորձությունների տարիներին և թե՛ խաղաղ ստեղծարար աշխատանքի տարիներին։ Հենց ժողովուրդն է կերտում իր պատմությունը, իր ճակատագիրը։ Միշտ դժվար, բայց մարդկային կյանքի պես անկրկնելի և անգին ճակատագիրը։ Եվ դա հարյուրապատիկ ճշմարիտ է, երբ խոսքը վերաբերում է սոցիալիզմի պատմությանը, մեծ հեղափոխության գործի շարունակմանը։

Ժողովրդի ցեմենտող և ավանգարդային ուժը եղել է ու մնում է բանվոր դասակարգը։ Տակավին հեղափոխական շարժման արշալույսին նա հետևում էր լենինյան կոչին՝ «Պայքարել ազատության համար՝ **ոչ մի րոպե** չդադարելով մտածել սոցիալիզմի մասին և այն իրագործելու ուղղությամբ աշխատանք տանելու, սոցիալիզմը նվաճելու համար ուժեր ու կազմակերպություն նախապատրաստելու մասին»։ Հենց բանվոր դասակարգը բոլոր աշխատավորների հետ դաշն կնքած կատարեց Հոկտեմբերյան մեծ հեղափոխությունը, կառուցեց սոցիալիզմ, պաշտպանեց այն թշնամու դեմ մղված ծանրագույն գոտեմարտերում։ Ամեն ինչ հաղթահարեց, ամեն մի փորձության դիմացավ և ամեն ինչի տոկաց։ Նա այսօր էլ ընթանում է զարգացող սոցիալիզմի, հեղափոխական վերակառուցման ավանգարդում։ Փա՜ռք նրան ու մեծ պատիվ։

Մեր լենինյան կուսակցությունը ստեղծվել ու զարգացել է որպես բան-

հունիսին անցկացված ընտրությունները մեզ համոզեցին նոր մոտեցումների ճշտության ու արդյունավետության։ Դրանք ցույց տվեցին ժողովրդի քաղաքական աճած ակտիվությունը, մարդկանց շահագրգռությունը, որ սովետների մեջ ընտրվեն աշխատավորների իրոք լավագույն ներկայացուցիչները, թեև այս անգամ էլ ամեն ինչ չանցավ առանց ձևականության ու կազմակերպամոլության։

Վերակառուցումը, դեմոկրատիայի զարգացումը թույլ են տալիս ամբողջ հզորությամբ միացնել արհմիությունների, կոմերիտմիության, մյուս հասարակական կազմակերպությունների, այդ թվում նաև վերջին տարիներս ծնված այնպիսի կազմակերպությունների եռանդը, հնարավորություններն ու իրավունքները, ինչպիսիք են պատերազմի ու աշխատանքի վետերանների համամիութենական խորհուրդը, կինխորհուրդները, կուլտուրայի սովետական ֆոնդը, Վ. Ի. Լենինի անվան մանկական ֆոնդը։ Անհրաժեշտ է, որ նրանց ամենօրյա գործունեությունը կապված լինի կենսականորեն կարևոր խնդիրների լուծման հետ, արտացոլի աշխատավորների լայն զանգվածների շահերը։

Նոր, հուսադրող շատ բան է ի հայտ եկել աշխատավորական կոլեկտիվներում, ըստ բնակության վայրի տարվող աշխատանքում։ Բացվում է օգտակար նախաձեռնության լայն ասպարեզ, որպեսզի բոլոր կենսական հարցերը լուծվեն օպերատիվ կերպով, առանց քաշքշուկի։

Երկրում ծավալվող նոր պրոցեսները նորովի են առաջադրում նաև ընդհանուր, քաղաքական ու իրավական կուլտուրայի, ես կասեի՝ սոցիալիստական դեմոկրատիզմի կուլտուրայի հարցերը։ Հենց այդ կուլտուրայի պակասի հետ են մեծապես կապված այնպիսի արատներ, ինչպիսիք են բյուրոկրատիզմն ու իշխանության չարաշահումը, պաշտոնամեծարությունը, անտնտեսվարությունն ու անպատասխանատվությունը։ Սոցիալիստական դեմոկրատիզմի իսկական կուլտուրայի համար ընդունելի չէ ո՛չ հրամայական, «սեղմման» ոճը, ո՛չ կազմակերպական հեղհեղուկությունը, գործի փոխարեն դատարկախոսությամբ զբաղվելը։ Թե՛ մեկը, թե՛ մյուսը խորթ են սոցիալիզմին։ Կասկածից ենթակա չէ նաև մեկ այլ բան՝ որքան լայն ու խորն է դեմոկրատիան, այնքան մեծ ուշադրություն են իրենց նկատմամբ պահանջում սոցիալիստական օրինականությունն ու իրավակարգը, այնքան շատ են մեզ պետք կազմակերպվածությունն ու գիտակցական կարգապահությունը։

Դեմոկրատիայի կուլտուրան չի կարող սահմանափակվել քաղաքականության ոլորտով։ Այն պետք է ներթափանցի մարդկային հարաբերությունների բոլոր ոլորտները։ Մենք ելնում ենք այն բանից, որ սոցիալիզմը մարդկանց դատողությունների, փոխհարաբերությունների, գործունեության մեծացող բազմազանության հասարակություն է։ Յուրաքանչյուր մարդ ունի իր սոցիալական փորձը, գիտելիքների, կրթվածության իր մակարդակը, տեղի ունեցողի ընկալման իր առանձնահատկությունները։ Այստեղից էլ հսկայական դիապազոնի կարծիքներ, համոզմունքներ, գնահատականներ, որոնք, բնականաբար, պահանջում են ուշադիր հաշվի առնել, համադրել։ Մենք հանդես ենք գալիս հասարակական կարծիքի բազմազանության, հոգևոր կյանքի հարստության օգտին։ Մենք վախենալու բան չունենք հասարակական զարգացման դժվարին պրոբլեմները բացահայտորեն առաջադրելուց ու լուծելուց, քննադատելուց ու վիճելուց։ Նման պայմաններում է հենց ծնվում ճշմարտությունը, ձևավորվում են ճիշտ լուծումները։ Սոցիալիստական դեմոկրատիան պետք է ամբողջովին ծառայի սոցիալիզմին, աշխատավոր մարդկանց շահերին։

Ընկերնե՛ր, բոլոր ուղղություններում արագացված առաջընթացի ամուր հիմք կարող է ստեղծվել միայն էկոնոմիկայի մեջ արմատական փոփոխությունների բազայի վրա։ Ասենք, բուն վերակառուցումն էլ լրիվ ուժ կհավաքի միայն այն ժամանակ, երբ խորապես ընդգրկի ժողովրդական տնտեսությունը։ Իսկ դա իր հերթին հենվում է տնտեսական մեխանիզմի, էկոնոմիկայի կառավարման ամբողջ համակարգի խոր վերափոխումների վրա։

Երկրում սկսված արմատական տնտեսական ռեֆորմի նպատակն է մոտակա երկու-երեք տարում ապահովել անցումը կառավարման չափազանց կենտրոնացված, հրահանգչական համակարգից դեմոկրատական, առավելապես տնտեսագիտական մեթոդների, ցենտրալիզմի ու ինքնակառավարման լավագույն զուգորդման վրա հիմնված համակարգի։ Այն ենթադրում է միավորումների ու ձեռնարկությունների ինքնուրույնության կտրուկ ընդլայնում, լրիվ տնտհաշվարկի ու ինքնաֆինանսավորման նրանց փոխադրում, դրա համար անհրաժեշտ բոլոր իրավունքներով աշխատավորական կոլեկտիվների օժտում։

Տնտեսական ռեֆորմը արդեն միայն պլաններ ու մտադրություններ չէ և ոչ էլ, առավել ևս, վերացական տեսական դատողություններ։ Այն ամուր և խոր կերպով մտնում է կյանք։ Այսօր արդյունաբերության, շինարարության, տրանսպորտի, գյուղատնտեսության զգալի թվով միավորումներ ու ձեռնարկություններ աշխատում են ինքնաֆինանսավորման ու ինքնածախսածածկման սկզբունքներով։ Եկող տարվա սկզբից այս պայմաններով կաշխատեն արդյունաբերական արտադրանքի 60 տոկոսը թողարկող ձեռնարկությունները։ Ուժի մեջ կմտնի պետական ձեռնարկության (միավորման) մասին օրենքը։

Այս ամենն արդեն անդրադառնում է տնտեսավարման պրակտիկայի վրա։ Կոլեկտիվներում նկատելիորեն աճում է հետաքրքրությունը աշխատանքի ֆինանսատնտեսական արդյունքների նկատմամբ։ Սկսում են ինչպես հարկն է հաշվել ծախսումներն ու արդյունքները, տնտեսել մեծ ու փոքր գործերում, գտնել պրոբլեմների առավել արդյունավետ լուծում։ Այսօր մեկ անգամ ևս մենք պետք է վճռականորեն ասենք՝ կուսակցությունը տնտեսական ռեֆորմների ընդունած սկզբունքներից ոչ մի նահանջ թույլ չի տա։ Նախատեսված բոլոր վերափոխումները պետք է լիովին իրականացվեն և կիրականացվեն։

Տնտեսական ռեֆորմն ու ամբողջությամբ վերցրած վերակառուցումը ակտիվորեն առաջին տեղ են մղում մարդուն։ Սոցիալական արդարությունը պահանջում է, որ մենք ավելի մեծ ուշադրություն նվիրենք անձի անհատական ընդունակությունների դրսևորմանը, բարոյապես ու նյութապես նշենք նրանց, ովքեր աշխատում են ավելի լավ ու ավելի շատ, օրինակ ցույց տալով ուրիշներին։

Իսկական տաղանդները, վառ անհատականությունները հասարակության անգին հարստությունն են, և նրանց մասին հարկավոր է հոգ տանել, բոլոր անհրաժեշտ պայմաններն ապահովել ստեղծագործելու և ապրելու համար։ Մենք ուզում ենք, որ ամենուրեք հարգեն յուրաքանչյուրի արժանապատվությունը, գիտելիքները, աշխատանքն ու ընդունակությունները։ Որպեսզի ազնիվ աշխատող, ստեղծագործող մարդը վստահ լինի, որ իր աշխատանքը պատշաճորեն կգնահատվի, որ ինքը կարող է միշտ ապացուցել իր ճշմարտացիությունը և պաշտպանություն գտնել, իսկ անբանի, գռփողի, բյուրոկրատի ու բռի մարդու տեղը ցույց կտան, ջրի երես կհանեն։ Այն դրական փոփոխությունները, որ այստեղ կատարվում են մեզանում, իսկ դրանք լայնորեն լուսաբանում են մասսայական ինֆորմացիայի միջոցները, արժանանում են աշխատավորների ջերմ պաշտպանությանը։

Այսօր առանձնապես անհանդուրժելի է գործի նկատմամբ անբարեխիղճ վերաբերմունքը։ Ժամանակակից գիտելիքներով ու տեխնիկայով զինված մարդը արտադրում է ավելի ու ավելի շատ արտադրանք, իսկ նրա աշխատանքը ավելի ու ավելի սերտորեն է կախված հանրային արտադրության հազարավոր այլ մասնակիցների գործունեությունից։ Նման պայմաններում անգամ մեկ բանվորի, ինժեների, գիտնականի անփութությունը կարող է չափազանց լուրջ հետևանքներ ունենալ, հղի է հասարակության համար հսկայական կորուստներով։

Առանձնապես կցանկանայինք ընդգծել մտավոր աշխատանքի, գիտության, տեխնիկայի ու հասարակության փոխգործակցության, գիտության ու գիտատեխնիկական առաջադիմության հումանիստական, բարոյաէթիկական ուղղվածության հարաճուն նշանակությունը։ Մենք հանդես ենք գալիս հօգուտ այն բանի, որ գիտության ու տեխնիկայի բոլոր նվաճումները ի սպաս դրվեն մարդուն, չխախտեն էկոլոգիական միջավայրը։ Մենք դաժան դաս ենք առնում այնպիսի ողբերգական իրադարձությունից, ինչպիսին Չեռնոբիլի ատոմակայանի վթարն էր։ Մենք հանդես ենք գալիս հօգուտ այն բանի, որ վերջ դրվի ռազմական նպատակներով գիտության օգտագործմանը։ Բարձրացնել սոցիալական պատասխանատվությունն ու պրոֆեսիոնալ ձեռնհասությունը, ստեղծագործական հատույցը՝ այսօր սա է ինժեներների ու գիտնականների, բժիշկների ու ուսուցիչների, գրականության ու արվեստի գործիչների պարտքը։

Վերականգնելով աշխատողների նյութական շահագրգռության իրավունք-

ները, միաժամանակ մեծացնելով ուշադրությունը դրա կոլեկտիվ ձևերի նկատմամբ, մենք չպետք է թույլ տանք սոցիալ-կուլտուրական և բարոյահոգեբանական խթանների թերագնահատում: Դրանք չափազանց կարևոր են կոլեկտիվիզմի, ընկերականության, սոցիալիստական ապրելակերպի հարաբերությունների նորմալ զարգացման, մարդկանց գիտակցության ու վարքագծի մեջ մեր՝ սովետական արժեքների հաստատման համար:

Ընկերնե՛ր, մենք արդարացիորեն ասում ենք, թե ազգային հարցը մեզանում լուծված է: Հեղափոխությունը ուղի հարթեց ազգերի ոչ միայն իրավական, այլև սոցիալ-տնտեսական իրավահավասարության համար, անչափ շատ բան անելով բոլոր հանրապետությունների ու ռեգիոնների, բոլոր ժողովուրդների տնտեսական, սոցիալական ու կուլտուրական զարգացումը հավասարեցնելու համար: Հոկտեմբերի մեծագույն նվաճումներից մեկը սովետական ժողովուրդների բարեկամությունն է: Այն ինքնատիպ եզակի երևույթ է համաշխարհային պատմության մեջ: Իսկ մեզ համար՝ սովետական պետության հզորության ու ամրության գլխավոր հենասյուներից մեկը:

Այսօր նշելով լենինյան ազգային քաղաքականության ակնառու նվաճումները, մեր երկրի ժողովուրդները խոր հարգանքի ու երախտագիտության տուրք են մատուցում ռուս մեծ ժողովրդին՝ նրա անշահախնդրության, իսկական ինտերնացիոնալիզմի, ազատ ու իրավահավասար հանրապետությունների սոցիալիստական միության ստեղծման, զարգացման ու ամրապնդման, սովետական երկրի բոլոր ժողովուրդների տնտեսական, սոցիալական ու կուլտուրական առաջադիմության գործում ներդրած անգնահատելի ավանդի համար:

Ուրեմն, ընկերներ, պահպանենք մեր մեծ ընդհանուր սեփականությունը՝ ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամությունը: Ուստի և երբեք չմոռանանք, որ մենք ապրում ենք բազմազգ մի պետությունում, որտեղ ամեն մի սոցիալ-տնտեսական, կուլտուրական, իրավական որոշում միշտ ուղղակիորեն ու անմիջականորեն շոշափում է նաև ազգային հարցը: Գործենք լենինաբար, առավելագույնս զարգացնենք յուրաքանչյուր ազգի, սովետական ժողովուրդներից յուրաքանչյուրի պոտենցիալը:

Ազգային հարաբերությունները մեր երկրում կենդանի կյանքի կենդանի հարց են: Մենք պետք է առավելագույնս ուշադիր ու նրբանկատ լինենք այն բոլոր հարցերում, որ վերաբերում են մարդկանց ազգային շահերին կամ ազգային զգացմունքներին: Ապահովենք բոլոր ազգերի ու ազգությունների աշխատավորների ամենաակտիվ մասնակցությունը մեր բազմազգ հասարակության կյանքի բազմապիսի խնդիրների լուծմանը: Մենք մտադիր ենք մոտ ապագայում ավելի խորը վերլուծել ու քննարկել այդ հարցերը, հաշվի առնելով այն, ինչ երկրի կյանքում բերում է վերակառուցումը, դեմոկրատացումը, նրա զարգացման նոր փուլը:

ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամությունն ու համագործակցությունը մեզ համար սրբազան գործ է: Այսպես եղել է և այսպես կլինի: Դա համապատասխանում է լենինիզմի ոգուն, մեծ Հոկտեմբերի ավանդույթներին, մեր հայրենիքում բնակվող բոլոր ազգերի ու ազգությունների արմատական շահերին:

Ընկերնե՛ր, սովետական հասարակության անցումը որակապես նոր վիճակի, դեպի ապագա նրա ճեղքումը կարող է կատարվել միայն լայն ճակատով, որը ներառի նաև սոցիալիզմի հոգևոր ոլորտը՝ գիտությունն ու կրթությունը, գրականությունն ու արվեստը, սովետական ժողովրդի սոցիալական ու բարոյական արժեքների ամբողջ ընդհանրությունը: Հոգևոր կուլտուրան ոչ միայն հասարակության զարդն է, այլև նրա կենսապահովման ոլորտը, հասարակության մտավոր ու կուլտուրական պոտենցիալը: Դա առեն նրա սոցիալական ամրությունը լեգիրացնող նյութ է և նրա դինամիկության կատալիզատորը:

Մենք պետք է ավելի բարձրացնենք սոցիալիստական կուլտուրայի հեղինակությունը: Գիտնականներն ու գյուտարարները, գրողներն ու ժուռնալիստները, նկարիչները, արտիստները, ուսուցիչները՝ կուլտուրայի ու կրթության տարբեր ոլորտների բոլոր աշխատողները կոչված են լինելու վերակառուցման առաջամարտիկներ: Կուսակցությունը ակնկալում է մեր մտավորականության քաղաքացիական ու սոցիալական ակտիվ դիրքորոշում:



Սովետական ժողովուրդը դարձել է լուսավորյալ ժողովուրդ, որի մասին անցյալի մեծ լուսավորիչները երազել միայն կարող էին: Բայց ինքնահանգստացումն այստեղ էլ է անթույլատրելի: Մեր նվաճումները չպետք է մոռանալ տան այն խնդիրների վիթխարիությունն ու պատասխանատվությունը, որ պետք է լուծվեն այսօր: Մենք տեսնում ենք, որ կրթության համակարգը շատ բաներում դադարել է բավարարել արդի պահանջմունքները: Դպրոցներում ու բուհերում ուսուցման որակը, բանվորների ու մասնագետների պատրաստումը ամենևին էլ լիովին չեն համապատասխանում կյանքի պահանջներին:

Անհրաժեշտ է լուրջ ցատկ կատարել դեպի առաջ, այս ոլորտում էլ արմատական փոփոխությունների հասնել: Հենց այսպես է կուսակցությունը մոտենում միջնակարգ և պրոֆեսիոնալ կրթության ռեֆորմին, բարձրագույն դպրոցի վերակառուցմանը: ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն որոշել է իր պլենումներից մեկում քննարկել կրթության հարցերի հասունացած պրոբլեմները:

Սրանք են, ընկերներ, մեր ստրատեգիական խնդիրները, որ մենք պետք է լուծենք սոցիալիստական հասարակության կյանքի բոլոր կողմերի հեղափոխական վերակառուցման ընթացքում:

ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումից հետո երկուսուկես տարի է անցել: Ի՞նչ է մեզ հաջողվել անել: Ի՞նչ բնագծում ենք մենք գտնվում: Կարծում եմ, որ նման հարցերը թե՛ տեղին են, թե՛ անխուսափելի այսօրվա հանդիսավոր նիստում:

Այս առումով ՍՄԿԿ Կենտկոմի օրերս ավարտված պլենումում արված ընդհանուր հետևությունն այսպիսին է. մենք բեկումնային պահ ենք ապրում: Հիմնականում ավարտված է վերակառուցման աշխատանքի առաջին փուլը: Երկրի վիճակի և զարգացման հեռանկարների խոր վերլուծության հիման վրա մշակվել է վերակառուցման կոնցեպցիան: Երկրում ստեղծվել է քաղաքական-բարոյահոգեբանական նոր իրադրություն: Կուսակցությանը հաջողվել է բարձրացնել մարդկանց շահագրգռությունը հասարակական գործերի նկատմամբ, նրանց ակտիվությունը, մեծացնել պահանջկոտության, քննադատության ու ինքնաքննադատության, հրապարակայնության մակարդակը, նախադրյալներ ստեղծել մարդկանց մտածողության ու տրամադրությունների մեջ ռեալ փոփոխությունների համար:

Գլխավորը, որ այս փուլում բնորոշ է սովետական մարդկանց մեծամասնության դիրքորոշմանը, վերակառուցման պաշտպանությունն է, այն բանի պահանջը, որ նա անշեղորեն առաջ ընթանա: Բանվորները, կոլտնտեսականները, մտավորականությունը ըմբռնումով են վերաբերվում աշխատանքային կարգապահությունը, աշխատանքի արդյունավետությունը, որակը բարձրացնելու անհրաժեշտությանը: Գործարաններում ու կառույցներում, կոլտնտեսություններում ու սովխոզներում, գիտահետազոտական կազմակերպություններում աշխատանքի կազմակերպման և վարձատրության նոր ձևերի լարված որոնում է տեղի ունենում: Մարդիկ այժմ ավելի պահանջկոտ են դառնում թե՛ իրենց, թե՛ ղեկավարների, մասնագետների նկատմամբ, վճռականորեն հանդես են գալիս անտնտեսվարության ու անպատասխանատվության դեմ: Աշխատավորների քաղաքացիական այդ դիրքորոշումը մենք բարձր ենք գնահատում, դա համարում վերակառուցման կուսակցության կուրսի նրա անբեկբեկելի և ծանրակշիռ պաշտպանությունը:

Հիմքեր կան խոսելու նաև պրակտիկ գործերում, նախ և առաջ սոցիալ-տնտեսական ոլորտում որոշ դրական տեղաշարժերի մասին: Արագացել են արտադրության աճի տեմպերը: Որակական փոփոխություններ են նկատվել էկոնոմիկայում, իրականացվում են գիտատեխնիկական խոշորագույն ծրագրեր, արդիականացվում է հայրենական մեքենաշինությունը: Սկսել է ավելի հաստատաքայլ զարգանալ գյուղատնտեսությունը, հատկապես անասնապահությունը:

Դուք բոլորդ գիտեք, ընկերներ, թե այս տարի եղանակի ինչպիսի աննպաստ պայմաններ էին ստեղծվել երկրի շրջանների մեծ մասում: Եվ այնուամենայնիվ, մեզ հաջողվեց հավաքել ավելի քան 210 միլիոն տոննա հացահատիկի բերք: Դա մեր ժողովրդի, նրան նոր ձևով աշխատելու ոտքի հանած կուսակցության հսկայական ջանքերի արգասիքն է:

Էկոնոմիկայի սկսված առողջացումը հնարավորություն է տվել ձեռնա-

մուխ լինել սոցիալական ոլորտում խոշոր միջոցառումների իրականացմանը։ Նկատելիորեն աճել են բնակարանային շինարարության մասշտաբները, ընդլայնվում է սպասարկման ոլորտը։ Աճում են աշխատավորների եկամուտները։ Բարձրացվել է ուսուցիչների ու բժիշկների աշխատավարձը։ Խոշոր ծրագրեր են իրականացվում բնակչության կրթության ու բուժսպասարկման ասպարեզում։

Եվ այնուամենայնիվ՝ սա միայն սկիզբն է։ Այժմ մենք կարող ենք խոսել վերակառուցման նոր փուլ թևակոխելու մասին, երբ մեր ամբողջ քաղաքականությունը, մեր բոլոր որոշումները կփոխարկվեն կոնկրետ գործերի, կմարմնավորվեն կյանքում։ Դա պահանջում է ամբողջ ժողովրդի՝ բանվոր դասակարգի, գյուղացիության, մտավորականության, մեր բոլոր կադրերի հսկայական ջանքերը։ Հիմա արդեն ինքը՝ կյանքը կստուգի մեր գաղափարները, պլանները, աշխատանքի մոտեցումներն ու մեթոդները։

Այսօր ամեն ինչում զգացվում է կյանքի մեծացող լարվածությունը։ Բայց դա արարման, ակտիվ աշխատանքի, քաղաքական ու մտավոր գործունեության լարվածություն է։ Լավ լարում է, ընկերնե՛ր, մոբիլիզացնող։

Կցանկանայի ընդգծել, որ այս տեսակետից առավել բարդ, վճռական, որոշ իմաստով բախտորոշ կլինի առաջիկա երկու, գուցեև՝ երեք տարին։ Նախ և առաջ այն պատճառով, որ հարկավոր կլինի միաժամանակ խոշորամասշտաբ խնդիրներ լուծել թե՛ էկոնոմիկայում, թե՛ սոցիալական ոլորտում, թե՛ պետական ու հասարակական կառավարման վերակառուցման գործում, թե՛ գաղափարախոսության ու կուլտուրայի բնագավառում։

Էկոնոմիկայում անհրաժեշտ է կառուցվածքային խոր տեղաշարժեր իրականացնել, բեկման հասնել գիտատեխնիկական առաջադիմության արագացման գործում, կատարել հիմնականում տնտեսական մեխանիզմի վերակառուցում և, այսպիսով, վճռական քայլ անել ժողովրդական տնտեսությունը ինտենսիվացման ռելսերի փոխադրելու ճանապարհին։

Առաջիկա ժամանակաշրջանի բարդությունը նաև այն է, որ վերափոխումները կշոշափեն մարդկանց ավելի ու ավելի մեծ զանգվածների, սոցիալական խմբերի ու բնակչության խավերի, բոլոր կադրերի շահերը։ Մենք վստահ ենք, որ երկրում տիրող իրադրությունը այսուհետև էլ կորոշեն աշխատավորների կողմից վերակառուցման լայն պաշտպանությունը, անհրաժեշտ փոփոխությունների, վերակառուցման եռանդուն շարունակման խոր ըմբռնումը, չնայած այդ ճանապարհին եղած հայտնի դժվարություններին։

Բայց սխալ կլիներ չտեսնել պահպանողական ուժերի դիմադրության ու բռշակի ուժեղացումը, որոնք վերակառուցման մեջ սպառնալիք են տեսնում իրենց շահերի ու շահադիտական նպատակների համար։ Եվ դա դրսևորվում է ոչ միայն կառավարման այս կամ այն օղակում, այլև աշխատավորական կոլեկտիվներում։ Հազիվ թե կասկած հարուցի նաև այն, որ պահպանողականության ուժերը չեն խորշի օգտվելու ամեն մի դժվարությունից, որպեսզի փորձեն վարկաբեկել վերակառուցումը, աշխատավորության դժգոհությունն առաջ բերել։ Ոմանք արդեն այսօր են նախընտրում հաշվարկել վրիպումները, փոխանակ թևքերը քշտած պայքարեն թերությունների դեմ, նոր լուծումներ որոնեն։ Ընդ որում, իհարկե, ոչ ոք չի ասում, թե ինքը դեմ է վերակառուցմանը։ Ոչ, ավելի շուտ նա հանդես է գալիս որպես նրա դժվարությունների դեմ պայքարող մարտիկ, գաղափարական հիմքերի պաշտպան, որոնք իբր կարող են սասանվել մասսաների աճող ակտիվության հետևանքով։

Բայց որքան կարելի է, ընկերներ, մեզ վախեցնել ամեն տեսակ դժվարություններով։ Իհարկե, դժվարություններն անխուսափելի են ցանկացած գործում, առավել ևս՝ նոր։ Բայց տեղում դոփելու, լճացման և անտարբերության հետևանքները շատ ավելի նշանակալի են ու թանկ են նստում, քան այն դժվարությունները, որոնք մի որոշ ժամանակ առաջանում են հասարակական կյանքի նոր ձևերի ստեղծագործական կերտման պրոցեսում։

Հարկավոր է սովորել ճանաչել, ջրի երես հանել, չեզոքացնել վերակառուցման հակառակորդների, նրանց խորամանկումները, ովքեր արգելակում են գործը, առաջը բար են գցում, չարախնդում են դժվարությունների ու անհաջողությունների առթիվ, ովքեր ձգտում են մեզ քաշել հետ՝ դեպի անցյալը։ Մենք չպետք է ենթարկվենք նաև չափազանց փութաջանների ու անհամբերների ճնշմանը, նրանց, ովքեր չեն ուզում հաշվի նստել վերակառուցման օբյեկտիվ տրամաբանության հետ, դժգոհություն են հայտնում վերափոխումների դանդաղ, ինչպես նրանք են կարծում, տեմպերից, այն բանից, որ դրանք իբր արագորեն անհրաժեշտ պտուղներ չեն տալիս։ Պետք է որ պարզ լինի՝ չի կարելի ցատկել-անցնել փուլերի վրայով և փորձել ամեն ինչ անել մի հարվածով։

Վերակառուցումը շարունակում է հեղափոխության գործը։ Եվ այսօր խիստ անհրաժեշտ է հեղափոխական տոկունության զենքին կատարելապես տիրապետելու կարողությունը։ Այդ տոկունությունը չի նշանակում տեղում նստել կամ լողալ հոսանքին համընթաց։ Դա իրադրությունը իրատեսորեն գնահատելու, դժվարություններից չերկնչելու, խուճապի չմատնվելու, ո՛չ հաջողություններից, ո՛չ էլ անհաջողություններից գլուխը չկորցնելու, ամեն օր, ամեն ժամ լարված ու նպատակասլաց աշխատելու, ամենուրեք և ամեն ինչում բուն կյանքի կողմից թելադրվող նպատակահարմար լուծումներ գտնելու, դրանք իրականացնելու ընդունակությունն է։

Այստեղից էլ՝ այն ամենի իրականացման համար, ինչ մենք նախանշել ենք, առաջադրված նպատակների ու խնդիրների իրականացման համար վստահ, հաստատակամ, նպատակասլաց աշխատանքի անհրաժեշտությունը։ Ի հայտ բերել, վերլուծել հակասությունները, հասկանալ դրանց բնույթը և այդ հիման վրա կառուցել քաղաքական, տնտեսական, սոցիալական, կազմակերպական ու գաղափարախոսական միջոցառումների համակարգ՝ այսպիսին պետք է լինի մեր մոտեցումը և ոչ թե այլ կերպ։

Ընկերնե՛ր, վերակառուցման հաջողությունը նախ և առաջ կախված է կուսակցության, յուրաքանչյուր կոմունիստի եռանդից, նպատակասլացությունից, օրինակի ուժից։

Սոցիալ-տնտեսական վերափոխումների պատմականորեն պատասխանատու այս պահին կոմունիստական կուսակցությունը համարձակորեն ու վճռականորեն պայքար սկսեց հասարակության նորացման համար, իր ուսերին առավ աշխատանքի ամենածանր բեռը։ Եվ մենք կարող ենք վստահորեն ասել, որ Հոկտեմբերի մեծ գործը՝ հեղափոխական վերակառուցման գործը, գտնվում է ամրակուռ ձեռքերում։ Կոմունիստները իրենց պարտքը ժողովրդի ու ժամանակի հանդեպ կկատարեն մեծ պատասխանատվությամբ։

Կուսակցական կազմակերպությունների, կուսակցական մարմինների ու կադրերի գործունեության արմատական բարելավումը դառնում է այսօրվա գլխավոր խնդիրը։ Հարկավոր է բեկման հասնել յուրաքանչյուր կուսակցական կազմակերպության գործունեության մեջ, ակտիվացնել յուրաքանչյուր կուսակցական կոմիտեի, յուրաքանչյուր կոմունիստի աշխատանքը։ Այնտեղ, որտեղ դա արդեն հաջողվել է անել, որտեղ կուսակցական ղեկավարները, կոմունիստները արթնացրել են մասսաների նախաձեռնությունն ու ինքնագործունեությունը, համարձակորեն բռնել դեմոկրատացման ու հրապարակայնության, տնտհաշվարկի, կոլեկտիվ կապալի արմատավորման ուղին, ասպարեզ են բացել աշխատանքի կազմակերպման ու խթանման, մարդկանց պահանջմունքների բավարարման նոր ձևերին, գործն առաջ է գնացել և գնացել է վճռականորեն։

Բայց մենք տեսնում ենք՝ մի շարք քաղաքներում, շրջաններում ու մարզերում և անգամ որոշ հանրապետություններում վերակառուցումը դեռ ինչպես հարկն է չի ծավալվել։ Եվ դա կուսակցական կոմիտեների ու նրանց ղեկավարների քաղաքական ու կազմակերպական դանդաղաշարժության, աննախաձեռնողության ուղղակի հետևանքն է։ Դա նույնպես հարկավոր է տեսնել։ Դրանք նույնպես մեր իրողություններն են։

Գործերի բարելավման համար առանձնակի պատասխանատվություն է ընկնում սկզբնական կուսակցական կազմակերպությունների վրա։ Ըստ էության նրանց են հանգում վերակառուցման բոլոր թելերը։ Հենց սկզբնական կուսակցական կազմակերպությունների նախաձեռնությունից է առաջին հերթին կախված վերափոխումների ընթացքը, մարդկանց մոբիլիզացնելու և ոգեշնչելու ունակությունը, աշխատանքում կոնկրետ բարելավման հասնելու ունակությունը։ Մի խոսքով, ընկերներ, առանց բոլոր կուսակցական կազմակերպությունների կյանքի կտրուկ ակտիվացման մենք չենք կարող վերակառու-

ցում կատարել։ Ուստի՝ ավելի շատ գործարարություն, ավելի շատ դեմոկրատիզմ, ավելի շատ կազմակերպվածություն ու կարգապահություն։ Եվ այն ժամանակ մենք կկարողանանք լրիվ ընթացքի մեջ դնել վերակառուցումը, նոր ազդակներ հաղորդել զարգացող սոցիալիզմին։

# III. ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐՆ ՈՒ ԱՐԴԻ ԱՇԽԱՐՀԸ

Ընկերնե՛ր, աշխարհն այնպիսին չէր լինի, ինչպիսին մենք հիմա տեսնում ենք, եթե չլիներ Ռուսաստանի մեծ հեղափոխությունը։ Մինչև համաշխարհային պատմության մեջ տեղի ունեցած այդ շրջադարձը ուժեղի ու հարուստի «իրավունքը», ինչպես և նվաճողական պատերազմները միջազգային հարաբերությունների սովորական նորմ էին։ Սովետական իշխանությունը, որի առաջին օրենսդրական ակտը նշանավոր հաշտության դեկրետն էր, պայքար մղեց իրերի այդպիսի կացության դեմ։ Սովետների երկիրը միջազգային պրակտիկայում մտցրեց այն, ինչը առաջ «մեծ քաղաքականության» սահմաններից դուրս էր. ժողովրդական ողջախոհությունն ու աշխատավոր զանգվածների շահերը։

Այն մի քանի տարիներին, երբ սովետական արտաքին քաղաքականությունը ղեկավարում էր Լենինը, նա ոչ միայն մշակում էր նրա ելակետային սկզբունքները, այլև ցույց էր տալիս, թե ինչպես պետք է դրանք կիրառել ամենաանսովոր և կտրուկ փոխվող իրադրության մեջ։ Իրականում, հակառակ նախնական ակնկալիքների, կապիտալիստական սիստեմի առավել «թույլ օղակի» կտրվելը ոչ թե «վերջին կռիվն» էր, այլ տևական ու բարդ պրոցեսի սկիզբ։

Սովետական պետության հիմնադրի մեծագույն ծառայությունն այն էր, որ նա ժամանակին տեսավ ռեալ հեռանկարը, որ նոր Ռուսաստանի առջև բացվում էր քաղաքացիական պատերազմի հաղթական ավարտի շնորհիվ։ Երկիրը, նրա կարծիքով, կարողացավ ստանալ ոչ միայն «դադար», այլև շատ ավելին՝ «նոր շերտ, երբ մեր հիմնական միջազգային գոյությունը կապիտալիստական պետությունների ցանցում նվաճված է»։ Եվ Լենինը վճռականորեն առաջարկեց նրանց հետ տևական «համակեցություն» սովորելու և սերտելու կուրսը։ Ի հակակշիռ ձախ ծայրահեղականության, նա հիմնավորեց հասարակական տարբեր կառուցվածք ունեցող պետությունների խաղաղ գոյակցության հնարավորությունը։

Քաղաքացիական պատերազմից հետո ընդամենը մեկուկես-երկու տարի պահանջվեց բանվորագյուղացիական պետությունը արտաքին քաղաքական մեկուսացումից դուրս բերելու համար։ Պայմանագրեր կնքվեցին սահմանակից երկրների, այնուհետև Գերմանիայի հետ Ռապալլոյում։ Սովետական հանրապետությունը դիվանագիտորեն ճանաչեցին Անգլիան, Ֆրանսիան, Իտալիան, Շվեդիան, կապիտալիստական այլ պետություններ։

Առաջին քայլերն արվեցին Արևելքի պետությունների՝ Չինաստանի, Թուրքիայի, Իրանի, Աֆղանստանի հետ իրավահավասար հարաբերությունների հաստատման ճանապարհին։

Այս ամենը սոսկ լենինյան արտաքին քաղաքականության ու դիվանագիտության առաջին հաղթանակներ չէին։ Դա ելք էր դեպի սկզբունքորեն նոր միջազգային զարգացման ուղի։ Հարթվեց մեր միջազգային քաղաքականության արմատական ուղղությունը, որ մենք իրավամբ անվանում ենք խաղաղության, պետությունների փոխշահավետ համագործակցության ու ժողովուրդների բարեկամության լենինյան կուրս։

Իհարկե, հետագայում մեր ամբողջ արտաքին քաղաքական աշխատանքը բաղկացած չէր միայն հաջողություններից ու նվաճումներից։ Եղան նաև վրիպումներ։ Երկրորդ համաշխարհային պատերազմից թե՛ առաջ, թե՛ հետո միշտ չէ և ամեն ինչում չէ, որ հաջողվում էր օգտագործել ի հայտ եկած հնարավորությունները։ Հսկայական բարոյական հեղինակությունը, որով պատերազմից դուրս եկավ Սովետական Միությունը, մենք չկարողացանք իրացնել, որպեսզի համախմբեինք խաղաղասեր, դեմոկրատական ուժերը և կանգնեցնեինք «սառը պատերազմի» կազմակերպիչներին։ Միշտ չէ, որ մեր վերաբերմունքը համարժեք էր իմպերիալիզմի պրովոկացիոն գործողություններին։



Այո՛, ինչ-որ բան կարելի էր ավելի լավ անել, ավելի արդյունավետ գործել, այդուամենայնիվ, այս հանդիսավոր ժամին մենք կարող ենք հայտարարել. մեր քաղաքականության սկզբունքային գիծը անշեղորեն ընթացել է այն գլխավոր ուղղությամբ, որը մշակել ու հարթել է Լենինը, այսինքն՝ սոցիալիզմի բնույթին, դեպի խաղաղություն նրա սկզբունքային կողմնորոշմանը համապատասխան։

Վճռականորեն հենց դրա շնորհիվ հաջողվեց կանխել միջուկային պատերազմի սանձազերծումը, թույլ չտալ, որ իմպերիալիզմը շահի «սառը պատերազմը»։ Մենք մեր դաշնակիցների հետ մեկտեղ պարտության մատնեցինք «սոցիալիզմը հետ շպրտելու» իմպերիալիստական ստրատեգիան։ Իմպերիալիզմը ստիպված եղավ չափավորել համաշխարհային տիրապետության իր նկրտումները։ Նոր փուլում հենց մեր խաղաղասիրական քաղաքականության արդյունքների վրա մենք կարողացանք հենվել, նոր մոտեցումներ մշակելով նոր մտածողության ոգով։

Խաղաղ գոյակցության լենինյան կոնցեպցիան, բնականաբար, փոփոխություններ է կրել։ Սկզբում այն հիմնավորվում էր նախ և առաջ սոցիալիստական հեղափոխության երկրում նոր հասարակության կառուցման համար նվազագույն արտաքին պայմաններ ստեղծելու անհրաժեշտությամբ։ Բայց, լինելով հաղթանակած պրոլետարիատի դասակարգային քաղաքականության շարունակությունը, խաղաղ գոյակցությունը հետագայում և հատկապես միջուկային դարում վերածվեց ամբողջ մարդկության գոյատևման պայմանի։

Այդ ուղղությամբ էլ լենինյան մտքի զարգացման բնագիծ դարձավ ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումը։ Ծավալուն ձևով արտաքին քաղաքական նոր կոնցեպցիա տվեց XXVII համագումարը։ Նրա ելակետը, ինչպես հայտնի է, հետևյալ գաղափարն է. չնայած արդի աշխարհի խոր հակասականությանն ու նրա մասերը կազմող պետությունների արմատական տարբերություններին, այն փոխկապակցված է, փոխադարձաբար կախված և իրենից մի որոշակի ամբողջականություն է ներկայացնում։

Դա պայմանավորված է աշխարհատնտեսական կապերի ինտերնացիոնալացմամբ, գիտատեխնիկական հեղափոխության համապարփակ բնույթով, ինֆորմացիայի ու հաղորդակցության միջոցների սկզբունքորեն նոր դերով, մոլորակի ռեսուրսների վիճակով, ընդհանուր էկոլոգիական վտանգով, զարգացող աշխարհի սոցիալական ճչացող պրոբլեմներով, որոնք շոշափում են բոլորի շահերը։ Բայց գլխավորը՝ մարդկային ցեղի գոյատևման պրոբլեմի ծագմամբ, քանի որ միջուկային զենքի հայտնվելն ու նրա գործադրման սպառնալիքը հարցականի տակ է դրել հենց նրա գոյությունը։

Այդպես հասարակական զարգացման շահերի գերակայության լենինյան գաղափարը ստացավ նոր իմաստ և նշանակություն։

Ապրիլյան պլենումից սկսած մենք բոլորին բավականաչափ հստակորեն ասացինք, թե մենք ինչպես ենք պատկերացնում դեպի ապահով, կայուն աշխարհ տանող շարժումը։ Մեր մտադրությունները և մեր կամքը արձանագրված են կուսակցության և ժողովրդի բարձրագույն քաղաքական համաժողովի՝ ՍՄԿԿ XXVII համագումարի որոշումներում, կուսակցության ծրագրի նոր խմբագրությունում, 1986 թվականի հունվարի 15-ի միջուկային զինաթափման ծրագրում, Դելիի դեկլարացիայում և այլ փաստաթղթերում, Սովետական Միության ղեկավար գործիչների պաշտոնական ելույթներում։

Սոցիալիստական ընկերակցության երկրների հետ համատեղ մենք Միավորված ազգերի կազմակերպությունում հանդես ենք եկել մի շարք խոշոր նախաձեռնություններով, այդ թվում միջազգային խաղաղության և անվտանգության համապարփակ համակարգ ստեղծելու նախագծով։ Վարշավայի պայմանագրի պետությունները ՆԱՏՕ-ին, Եվրոպայի բոլոր երկրներին դիմել են զինված ուժերը և սպառազինությունները մինչև խելամիտ բավարարության մակարդակ կրճատելու առաջարկությամբ։ Հրավիրել են երկու դաշինքների ռազմական դոկտրինների համեմատություն կատարել դրանց բացառապես պաշտպանողական ուղղվածություն տալու նպատակով։ Հանդես են եկել կոնկ-

րետ պլանով և ակտիվորեն ձգտում են հասնել քիմիական զենքի արգելման ու վերացման: Նախաձեռնություն են հանդես բերել սպառազինությունների կրճատման վերահսկման արդյունավետ մեթոդների կազմակերպման բնագավառում, ներառյալ տեղերում կատարվող տեսչական ստուգումը:

Մենք վճռականորեն հանդես եկանք ՄԱԿ-ի հեղինակության ամրապնդման օգտին, միջազգային հանրության կողմից նրան և նրա մարմիններին տրված իրավունքների լիարժեք և ներգործուն օգտագործման օգտին: Մեզանից կախված ամեն ինչ անում ենք, որպեսզի ՄԱԿ-ը՝ այդ ունիվերսալ մեխանիզմը, կարողանա իրավասու կերպով քննարկել և ապահովել բոլոր պետությունների շահերի հաշվեկշռի կոլեկտիվ որոնումը, արդյունավետորեն կատարել իր խաղաղասիրական պարտականությունները:

Ամենագլխավորն այն է, որ մեր կոնցեպցիան և խաղաղության հաստատուն կողմնորոշումը արտացոլում են գտել գործերում, միջազգային ասպարեզում մեր ամբողջ վարքագծում, արտաքին քաղաքական և դիվանագիտական աշխատանքի բուն ոճի մեջ, որը ներթափանցված է այնպիսի երկխոսության ձգտմամբ, որն անկեղծ է և ազնիվ, հաշվի է առնում փոխադարձ մտահոգությունները և համաշխարհային գիտության հետևությունները, առանց որևէ մեկի սեփական նպատակներին ծառայեցնելու կամ խաբելու փորձերի: Այնպես որ, այդ ավելի քան երկու տարին անցնելուց հետո մենք վստահորեն ասում ենք. քաղաքական նոր մտածողությունը սոսկ դեկլարացիա և կոչ չէ, այլ գործողության փիլիսոփայություն, եթե կուզեք՝ կյանքի փիլիսոփայություն է: Այն շարունակում է զարգանալ աշխարհի օբյեկտիվ պրոցեսների ընթացքի հետ մեկտեղ: Եվ այն արդեն գործում է:

Միջազգային զարգացման սկսված նոր փուլի իրադարձությունների թվում, որոնք այսօր արժանի են հիշատակման և կմնան պատմության մեջ, 1986 թվականի հոկտեմբերին Ռեյկյավիկում կայացած հանդիպումն է: Այն նոր մտածողությանը տվեց գործնական եռանդ, նրան թույլ տվեց ամրապնդվել ամենատարբեր հասարակական և քաղաքական շրջաններում, իսկ միջազգային քաղաքական կոնտակտները դարձրեց ավելի արդյունավետ:

Նոր մտածողությունը իր համամարդկային չափանիշներով, բանականության և բացախոսության կողմնորոշումով սկսել է ճանապարհ հարթել միջազգային գործերում, քանդելով մեր նախաձեռնությունների ու գործողությունների նկատմամբ եղած կասկածամտության և հակասովետիզմի ստերեոտիպերը:

Իհարկե, եթե չափենք այն խնդիրների մասշտաբներով, որ ժամանակակից մարդկությունը պետք է լուծի գոյատևումն ապահովելու համար, ապա դեռ անչափ քիչ բան է արված: Բայց սկիզբը դրված է, և վերափոխումների առաջին նշաններն առկա են: Դրա համոզիչ հաստատումներից մեկը միջին հեռահարության հրթիռների և օպերատիվ-տակտիկական հրթիռների շուրջը մոտ ժամանակներս Ամերիկայի Միացյալ Նահանգների հետ համաձայնագիր կնքելու պայմանավորվածությունն է:

Այդ համաձայնագրի կնքումը ունի ինքնուրույն մեծ նշանակություն. առաջին անգամ կվերացվեն մի ամբողջ կարգ միջուկային սպառազինություններ, առաջին ռեալ քայլը կարվի միջուկային զինանոցների ոչնչացման ուղղությամբ, գործնականորեն ցույց կտրվի, որ կարելի է ընթանալ այդ ուղղությամբ՝ ոչ ոքի վնաս չհասցնելով:

Դա, անտարակույս, նոր մտածողության կարևոր հաջողությունն է, խըստիվ պահպանելով հավասար անվտանգության սկզբունքը՝ փոխադարձաբար ընդունելի հանգուցալուծումներ գտնելու մեր պատրաստակամության արգասիքը:

Սակայն այդ համաձայնագրի հարցը հիմնականում լուծվեց դեռևս Ռեյկյավիկում, պրեզիդենտի հետ մեր երկրորդ հանդիպման ժամանակ:

ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի ամենաբարձր ղեկավարների երրորդ և չորրորդ հանդիպումներից այսքան պատասխանատու ժամանակաշրջանում աշխարհը ավելի շատ բան է ակնկալում, քան սոսկ այն բանի ձևական արձանագրումը, ինչի մասին համաձայնության եկանք մեկ տարի առաջ, ակնկալում է ոչ միայն դիսկուսիայի շարունակություն: Շտապեցնում են նաև ժամանակը, զենքի կատարելագործման հարաճուն վտանգը, զենք, որը կարող է դուրս գալ վերահսկողությունից:



Ահա թե ինչու մենք այդ հանդիպումների ընթացքում հաստատակամորեն կձգտենք հասնել շոշափելի տեղաշարժի, կոնկրետ արդյունքների միջուկային զենքի վերացման արմատական հարցում՝ ստրատեգիական հարձակողական միջոցները կրճատելու և զենքի դուրսբերումը տիեզերք թույլ չտալու հարցում:

Այնուամենայնիվ, մենք ի՞նչ հիմքեր ունենք լավատեսության համար, համապարփակ անվտանգությունը իրոք հնարավոր համարելու համար: Դրա վրա արժե կանգ առնել:

Նշելով մեր հեղափոխության 70-ամյակը, որը չէր հաղթանակի, եթե տեսականորեն նախապատրաստված չլիներ, մենք այժմ էլ, համաշխարհային պատմության նոր բեկման ժամանակաշրջանում տեսականորեն մշակում ենք դեպի կայուն խաղաղություն առաջ ընթանալու հեռանկարները: Նոր մտածողության միջոցով մենք հիմնականում հիմնավորել ենք զինաթափման պայմաններում միջազգային անվտանգության համապարփակ համակարգի պահանջմունքն ու հնարավորությունը: Այժմ հարկավոր է ապացուցել դեպի այդ նպատակը գնալու և դրան մոտենալու անհրաժեշտությունն ու ռեալությունը: Բացահայտել այն ուժերի փոխգործողության օրինաչափությունները, որոնք պայքարում, հակասություններում, շահերի բախումներում կարող են տալ պահանջվող արդյունքը: Եվ այս կապակցությամբ մենք նախ և առաջ, և դարձյալ մեր լենինյան ուսմունքի դիրքերից, օգտվելով նրա մեթոդաբանությունից, պետք է մեզ դժվարին հարցեր տանք:

Առաջինը վերաբերում է իմպերիալիզմի բնույթին: Այստեղ, ինչպես հայտնի է, թաքնված է պատերազմի գլխավոր վտանգը: Հասարակարգի բնույթը, իհարկե, չի կարող փոփոխվել արտաքին պայմանների ազդեցությամբ: Բայց համաշխարհային զարգացման ներկա փուլում, աշխարհի փոխկախվածության և ամբողջականության նոր մակարդակում հնարավո՞ր է արդյոք այդ բնույթի վրա այնպիսի ներգործություն, որը շրջափակեր դրա առավել վտանգավոր դրսևորումները: Այլ կերպ ասած, կարելի՞ է արդյոք հույս ունենալ, թե ամբողջական աշխարհի օրինաչափությունները, որտեղ համամարդկային արժեքները գլխավոր գերակայություն ունեն, կկարողանան սահմանափակել կապիտալիստական սիստեմի եսակենտրոն, նեղ դասակարգային օրինաչափությունների ավերիչ գործողության ընդգրկումը:

Երկրորդ հարցը: Այն կապված է առաջինի հետ. ի վիճակի՞ է արդյոք կապիտալիզմը ռազմամոլությունից ազատվել, կարո՞ղ է արդյոք նա տնտեսապես գործել ու զարգանալ առանց դրա: Եվ ուտոպիական չէ՞ արդյոք Արևմուտքի երկրներին ուղղված մեր հրավերը նախապատրաստելու և զուգակցելու էկոնոմիկայի վերափոխադրման, այսինքն՝ խաղաղ ռելսերի վրա նրա փոխադրման ծրագրերը:

Երրորդ հարցը: Կարո՞ղ է արդյոք կապիտալիստական սիստեմը յոլա գնալ առանց նեոգաղութատիրության, որը նրա ներկայիս կենսաապահովման աղբյուրներից մեկն է: Այլ կերպ ասած, ի վիճակի՞ է արդյոք այդ սիստեմը գործելու առանց «երրորդ աշխարհի» հետ անհամարժեք փոխանակման, որը հղի է անկանխատեսելի հետևանքներով:

Եվ դրանց կողքին ևս մեկ հարց: Որքանո՞վ է իրատեսական այն հույսը, թե աշխարհի աղետալի վտանգի ըմբռնումը, իսկ դա, մենք գիտենք, թափանցում է նույնիսկ արևմտյան աշխարհի կառավարող ընտրախավի վերին ոլորտները, կվերածվի գործնական քաղաքականության, չէ որ որքան էլ ուժեղ լինեն բանականության փաստարկները, որքան էլ զարգացած լինի պատասխանատվության զգացումը, որքան էլ մեծ լինի ինքնապահպանման բնազդը, կան բաներ, որոնք ոչ մի կերպ չի կարելի թերագնահատել, և որոնք կանխորոշվում են տնտեսական, իսկ հետևաբար նաև դասակարգային շահով:

Այլ կերպ ասած, խոսքն այն մասին է, թե կապիտալիզմը կկարողանա՞ արդյոք հարմարվել միջուկազերծ և զինաթափված աշխարհի պայմաններին, նոր, արդարացի տնտեսակարգի պայմաններին, երկու աշխարհների հոգևոր արժեքների ազնիվ համադրման պայմաններին: Դրանք բնավ էլ պարապ հարցեր չեն: Դրանց պատասխանից է կախված, թե ինչպես կզարգանան պատմական իրադարձությունները առաջիկա տասնամյակներում:

Բայց բավական է առաջադրել թեկուզ միայն այս հարցերը խնդրի ամ-

տնտեսական ցուցանիշների գծով համաշխարհային մակարդակին հասնելը, այն վիթխարի և անչափ հարուստ երկրին թույլ կտա այնպես ներգրավվել աշխատանքի և ռեսուրսների համաշխարհային բաժանման մեջ, ինչպես դա դեռ երբեք չի եղել։ Նրա գիտական, տեխնիկական, արտադրական մեծ պոտենցիալը կդառնա աշխարհատնտեսական կապերի էապես ավելի նշանակալի մասը։ Եվ դա վճռականապես կընդլայնի ու կամրապնդի խաղաղության և միջազգային անվտանգության համապարփակ համակարգի նյութական բազան։ Այսպիսին է, ի դեպ, վերակառուցման ևս մեկ կարևորագույն կողմը, ժամանակակից քաղաքակրթության բախտի մեջ նրան հատկացված տեղը։

Հօգուտ խաղաղության օբյեկտիվ պրոցեսների վրա ազդեցություն կգործեն դասակարգային պայքարը, սոցիալական հակասությունների մյուս դրսևորումները։

Բանվորական շարժման առաջավոր ուժերը որոնում են դրա քաղաքական մակարդակի բարձրացման ուղիներ։ Նրանց հարկ է լինում գործել շատ բարդ, նոր և փոփոխվող իրադրության մեջ։ Այլ կերպ են ծառացել ոչ միայն մասսաների տնտեսական իրավունքների ու շահերի պաշտպանության, այլև դեմոկրատիայի համար մղվող պայքարի, այդ թվում արտադրության դեմոկրատիայի հարցերը։ Օրինակ, հաճախ բանվորներին առաջարկում են «պարտնյորություն», բայց այնպիսին, երբ ամուր փակված է բիզնեսի սրբություն սրբոցի մուտքը և երբ խոսք անգամ չի կարող լինել ղեկավար անձնակազմի ազատ ընտրության մասին։

Արևմտյան աշխարհը լի է այնպիսի «տեսություններով», թե բանվոր դասակարգն անհետանում է, թե նա իբր արդեն ամբողջովին լուծվել է «միջին խավի» մեջ, սոցիալապես վերասերվել է և այլն, և այլն։ Այո՛, բանվոր դասակարգի մեջ վերափոխումները մեծ են, էական։ Բայց դասակարգային հակառակորդը իզուր է իրեն մխիթարում և փորձում ապակողմնորոշել, շփոթության մեջ գցել բուն բանվորական շարժումը։ Բանվոր դասակարգը այժմ իր նոր սոցիալական սահմաններում ներկայացնելով քանակապես գերակշիռ ուժ, ունի վճռական դեր խաղալու պոտենցիալ, մանավանդ պատմության կտրուկ շրջադարձերում։

Դրդապատճառները կարող են տարբեր լինել։ Եվ հավանականներից մեկը էկոնոմիկայի խելահեղ ռազմականացումն է։ Ռազմամոլական հիմքի վրա տեխնոլոգիական հեղափոխության նոր փուլին անցնելը ուժեղ կատալիզատոր է, մանավանդ որ դա պատերազմի ուղին է, իսկ հետևաբար դիպչում է բնակչության բոլոր խավերին, մասսայական բողոքի շրջանակները ընդլայնում տնտեսական պահանջների սահմաններից դուրս։ Այնպես որ, այստեղ էլ կառավարող դասակարգին, մոնոպոլիստական կապիտալի տիրակալներին հարկ կլինի ընտրություն կատարել։ Մենք համոզված ենք (և գիտությունը դա հաստատում է), որ տեխնոլոգիայի և արտադրության կազմակերպման ներկա մակարդակի պայմաններում էկոնոմիկայի վերափոխադրումը, ապառազմականացումը հնարավոր են։ Միաժամանակ դա կլինի նաև ընտրություն հօգուտ խաղաղության։

Նույնը տեղի է ունենում զարգացած և զարգացող աշխարհի հարաբերություններում տիրող ճգնաժամի հետևանքների հետ։ Եթե բանը հասնի պայթյունի սահմանագծին և անհնար դառնա այսուհետև «երրորդ աշխարհի» շահագործման հաշվին բարիքներից օգտվելը, ապա առանց դրա գոյատևելու անընդունակ սիստեմի անընդունելիության և անհանդուրժելիության հարցը կարող է քաղաքական հողի վրա դրվել, այն էլ շատ սրությամբ։ Ընդհանուր առմամբ, այս տեսակետից ևս կապիտալիզմը կանգնած է խիստ ընտրության առջև. բանը հասցնել պայթյունի՞, թե՞ հաշվի նստել փոխկապակցված և ամբողջական աշխարհի օրենքների հետ, որը պահանջում է իրավահավասար հիման վրա շահերի հաշվեկշռում։ Եվ ըստ մեր դիտարկած իրավիճակի դա ոչ միայն անհրաժեշտ է, այլև հնարավոր։ Մանավանդ որ նույն ուղղությամբ են գործում ուժերը հենց «երրորդ աշխարհում»։

Ընդունված է խոսել ազգային-ազատագրական շարժման անկման մասին։ Բայց ընդսմին, հավանորեն, տեղի է ունենում հասկացությունների նենգափոխում, իրավիճակի նորության անտեսում։ Եթե նկատի ունեն ազատագրական ազդակը, որը գործում էր քաղաքական անկախության համար մղված



պայքարի փուլում, ապա դա, անշուշտ, թուլանում է։ Եվ դա բնական է։ Իսկ «երրորդ աշխարհի» զարգացման նոր, ներկա փուլի համար անհրաժեշտ ազդակը դեռ նոր-նոր է ձևավորվում։ Եվ դա պետք է հստակորեն նկատի առնել և հոռետեսության մեջ չընկնել։

Այն գործոնները, որոնցից ստեղծվում է այդ ազդակը, բազմաբնույթ են ու ոչ միատեսակ։ Այստեղ է նաև հզոր տնտեսական պրոցեսը, որը երբեմն արտառոց ձևեր է ընդունում։ Օրինակ, որոշ երկրներ, պահպանելով թերզարգացածության գծերը, համաշխարհային էկոնոմիկայում և քաղաքականության մեջ հասնում են մեծ տերությունների մակարդակին։ Այստեղ է նաև քաղաքական եռանդի աճագնացումը ազգերի ձևավորման և բառիս բուն իմաստով ազգային պետությունների ամրապնդման ընթացքում, որոնց մեջ էական տեղ են գրավում հեղափոխական վարչակարգեր ունեցող երկրները։ Այստեղ են նաև ցասման ողկույզները աղքատության և հարստության ճչացող բևեռացման հողի վրա, հակադրությունները հնարավորությունների և ռեալ վիճակի միջև։

Զարգացող երկրների միջպետական համախմբման պրոցեսներն արտահայտող կազմակերպություններում ավելի ու ավելի ցայտունորեն և ակտիվորեն է հանդես գալիս ինքնօրինակության և ինքնուրույնության ուժը։ Ավելի կամ պակաս չափով դա բնորոշ է բոլոր կազմակերպություններին, իսկ դրանք քիչ չեն. Աֆրիկայի միասնության կազմակերպությունը, արաբական երկրների լիգան, ԱՍԵԱՆ-ը, ամերիկյան պետությունների կազմակերպությունը, լատինաամերիկյան տնտեսական համակարգը, հարավխաղաղօվկիանոսյան համաժողովը, Հարավային Ասիայի ռեգիոնալ համագործակցության միավորումը, իսլամական կոնֆերանս կազմակերպությունը և հատկապես չմիանալու շարժումը։

Դրանք արտացոլում են հենց տվյալ փուլի հակասական շահերի, պահանջների, պահանջմունքների, գաղափարախոսությունների, բողոքների և նախապաշարմունքների արագ հաջորդափոխությունը։ Դրանք բոլորը, թեև արդեն դարձել են համաշխարհային քաղաքականության նկատելի գործոն, բայց դեռ չեն բացահայտել իրենց հնարավորությունները։ Սակայն պոտենցիալն այստեղ վիթխարի է, և դժվար է կանխատեսել նույնիսկ առաջիկա կես դարի արդյունքները։

Պարզ է մի բան. դա մի ամբողջ աշխարհ է, որը փնտրում է բովանդակ մարդկության հարցերի լուծմանը իր ներգործուն, իրավահավասար մասնակցության կազմակերպական ձևեր։ Այնտեղ կա երկուսուկես միլիարդ մարդ։ Եվ կարելի է կանխագուշակել, որ յոթ մղոնանոց քայլերով աճելու է ոչ միայն նրա ազդեցությունը համաշխարհային քաղաքականության վրա, այլև յուրօրինակ դերը ապագայի համաշխարհային էկոնոմիկայի ձևավորման գործում։

Վերազգային կապիտալն իր ամբողջ հզորությամբ հանդերձ չի սահմանելու «երրորդ աշխարհի» շարժման ուղիները, այլ ավելի շուտ ինքը հարկադրված կլինի հարմարվել այն անկախ ընտրությանը, որ կատարել կամ կատարելու են իրենք ժողովուրդները։ Իսկ նրանք և նրանց ներկայացնող կազմակերպությունները կենսականորեն շահագրգռված են համաշխարհային նոր տնտեսակարգով։

Եվ դարձյալ ոչ պակաս կարևոր մի հանգամանք։ Բուն կապիտալիստական աշխարհի շրջանակներում զարգացումը վերջին տասնամյակներում կյանքի է կոչել հասարակական հակասությունների և շարժումների նոր ձևեր։ Դրանք են միջուկային սպառնալիքի դեմ, բնական միջավայրի պաշտպանության համար, ռասայական խտրականության դեմ, հասարակությունը հաջողակների և դատապարտվածների բաժանող քաղաքականության դեմ, նոր կապիտալիստական արդիականացման զոհը դարձած ամբողջ արդյունաբերական գոտիներում առկա աղետների դեմ ծավալված շարժումները։ Այդ շարժումներին մասնակցում են միլիոնավոր մարդիկ, դրանց ոգեշնչողներ ու լիդերներ են դառնում գիտության և մշակույթի նշանավոր գործիչները, ազգային և միջազգային մասշտաբի հեղինակությունները։

Մի շարք երկրների քաղաքական պրոցեսում կայունորեն շարունակում են կարևոր դեր խաղալ, իսկ ինչ-որ տեղ իրենց ազդեցությունն են ուժեղացնում սոցիալ-դեմոկրատական, սոցիալիստական, լեյբորիստական կուսակցու-

է դնում։ Լենինի բառերով ասած՝ «հեղափոխության ժամանակը գործելու ժամանակ է, գործելու թե՛ վերից և թե՛ վարից»։ Այսպիսին է նոր տիպի կուսակցության ավանդույթը նրա առաջին իսկ քայլերից։ Այսպիսին է սովետական հասարակության ավանդարդին ներկայացվող պահանջը սոցիալիզմի զարգացման ներկայիս բարդագույն, բայց և իր նորությամբ ոգեշնչող փուլում։

Ընկերնե՛ր, խնկական պատմության շեմը մարդկությունն անցավ 1917 թվականին։ Սակայն նախընթաց յոթանասուն տարիները, տնտեսական ցնցումներն ու սոցիալական համաղետները, որոնք ծնեցին ֆաշիզմ ու երկրորդ համաշխարհային պատերազմ, «սառը պատերազմ» ու սպառազինությունների մրցավազք, ջերմամիջուկային աղետի սպառնալիք ու գլոբալ ճգնաժամեր, վկայում են, որ անցյալը տակավին շարունակում է համառորեն հետ պահել մարդկության մի զգալի մասին։ Եվ այնուամենայնիվ, այն ժամանակը, որում մենք ապրում ենք, XX և XXI հարյուրամյակների սահմանագիծը, մենք իրավունք ունենք բացառիկ համարել ինչպես սոցիալական խոր փոփոխություններով, այնպես էլ այն խնդիրների գլոբալությամբ, որ ծառացել են աշխարհի ժողովուրդների առջև։

Այսօր մենք տեսնում ենք. մարդկությունն իրոք դատապարտված չէ առհավետ գոյություն ունենալու այնպես, ինչպես ապրել է մինչև 1917 թվականի հոկտեմբերը։ Սոցիալիզմը վերածվել է հզոր, աճող, զարգացող իրողության։ Հենց Հոկտեմբերը, հենց սոցիալիզմն են մարդկությանը ցույց տալիս դեպի ապագա, դեպի իրոք մարդկային հարաբերությունների նոր արժեքներ ճգվող երթուղիները։ Եսամոլության փոխարեն՝ կոլեկտիվիզմ, շահագործման ու ճնշման փոխարեն՝ ազատություն և հավասարություն։ Փոքրամասնության բռնապետության փոխարեն՝ իսկական ժողովրդապետություն, հասարակական ուժերի տարերային ու դաժան խաղի փոխարեն՝ բանականության և մարդասիրության հաղթանակ։ Գժտությունների, երկպառակությունների ու պատերազմների փոխարեն՝ համամարդկային միաբանություն և խաղաղություն։

Այժմյան սերունդները, և ոչ միայն մեր երկրում, պատասխանատու են քաղաքակրթության բախտի համար և երկրագնդի վրա հենց կյանքի համար։ Վերջին հաշվով նրանցից է կախված, թե համաշխարհային պատմության նոր հազարամյակի սկիզբը արդյոք կդառնա՞ այդ պատմության ողբերգական վերջերգը, թե՞ ապագայի ոգեշունչ նախերգը։

Մինչև XXI դարի սկիզբը մնացել է ընդամենը 13 տարուց մի փոքր ավելի։ Իսկ 2017 թվականին մեր ժողովուրդը, ամբողջ առաջադեմ մարդկությունը կդիմավորեն Մեծ հոկտեմբերի հարյուրամյակը։

Ինչպիսի՞ն կլինի աշխարհը մեր հեղափոխության հարյուրամյակի տարում։ Ինչպիսին կլինի սոցիալիզմը, հասունության ի՞նչ աստիճանի կլինի պետությունների ու ժողովուրդների համաշխարհային հանրությունը։ Գուշակություն չանենք։ Բայց պարտավոր ենք հիշել, որ հենց այսօր են դրվում ապագայի հիմքերը։

Եվ մեր պարտքն է պահպանել մեր անկրկնելի քաղաքակրթությունը, բուն կյանքը երկրագնդի վրա։ Հասնել բանականության հաղթանակին միջուկային խելացնորության նկատմամբ։ Բոլոր պայմաններն ստեղծել մարդու և մարդկության ազատ և համակողմանի զարգացման համար։

Մենք տեսնում ենք անվերջ առաջադիմության հնարավորություն։ Գիտակցում ենք, որ դրա ապահովումը դյուրին չէ։ Դա մեզ չի վախեցնում։ Ընդհակառակը, ոգեշնչում է, քանի որ կյանքը տոգորում է մարդասիրական վսեմ նպատակով, խոր իմաստով։

1917 թվականի հոկտեմբերին մենք հեռացանք հին աշխարհից, մեկընդմիշտ մերժելով այն։ Մենք ընթանում ենք դեպի նոր աշխարհ, կոմունիզմի աշխարհ։ Այդ ուղուց մենք երբեք չենք շեղվի։

(Զեկուցումը լսվեց մեծ ուշադրությամբ և ուղեկցվում էր ծափահարություններով)։

---

# ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԵՎ ՇԱՐԺՈՒՄՆԵՐԻ՝ ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ 70-ԱՄՅԱԿԻ ՏՈՆԱԿԱՏԱՐՈՒԹՅԱՆԸ ԺԱՄԱՆԱԾ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑԻՉՆԵՐԻ ՀԱՆԴԻՊՈՒՄ

Մեծ Հոկտեմբերի 70-ամյակի տոնակատարությանը իրենց պատվիրակություններն ուղարկած կուսակցությունների և կազմակերպությունների նախնական համաձայնությամբ նոյեմբերի 4-ին Մոսկվայում բացվեց այդ պատվիրակությունների հանդիպումը։

Մասնակիցները միահամուռ կերպով արտահայտվեցին այն բանի օգտին, որ հանդիպմանը նախագահի ՍՄԿԿ-ի պատվիրակության ղեկավար Մ. Ս. Գորբաչովը։ Պատվիրակության կազմի մեջ մտնում են ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամներ Ա. Ա. Գրոմիկոն, Ե. Կ. Լիգաչովը, Ա. Ն. Յակովլեը, Ն. Ի. Ռիժկովը, ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղարներ Ա. Ֆ. Դոբրինինը, Վ. Ա. Մեդվեդևը։

Առավոտյան նիստում ելույթ ունեցան Արգենտինայի կոմկուսի գլխավոր քարտուղար Ա. Ֆավան, Հունաստանի կոմկուսի Կենտկոմի գլխավոր քարտուղար Խ. Ֆլորակիսը, Հնդկական ազգային կոնգրես (Ի) կուսակցության համահնդկական կոմիտեի գլխավոր քարտուղար Ռ. Ռ. Ռաոը, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովը, Արաբական սոցիալիստական վերածնության կուսակցության (Սիրիա) գլխավոր քարտուղարի տեղակալ Ա. ալ Ահմարը, Շվեյցարիայի սոցիալ-դեմոկրատական կուսակցության Կենտկոմի անդամ, «Բազլեր ացը» թերթի գլխավոր խմբագիր Թ. Մայսենը, Բուլղարիայի կոմկուսի Կենտկոմի գլխավոր քարտուղար Տ. Ժիվկովը, ազգային անկախության միացյալ կուսակցության (Զամբիա) Կենտկոմի անդամ Է. Մուդենդան, Բելգիայի կոմկուսի նախագահ Լ. Վան Գեյթը, Ֆրանսիայի կոմկուսի գլխավոր քարտուղար Ժ. Մարշեն, Ֆարաբունդո Մարտիի անվան ազգային ազատագրության ճակատի (Սալվադոր) ներկայացուցիչ Շ. Խ. Խանդալը, Նորվեգիայի բանվորական կուսակցության գլխավոր քարտուղար Թ. Յագլանդը, ՀՍԲԿ գլխավոր քարտուղար Յա. Կադարը, Պաղեստինի ազատագրման կազմակերպության գործկոմի նախագահ Յա. Արաֆաթը, Ավստրալիայի լեյբորիստական կուսակցության փոխպրեզիդենտ Մ. Բիանը, ԳՍՄԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Է. Հոնեկերը, Մադագասկարի անկախության կոնգրեսի կուսակցության նախագահ Ռ. Անդրիամանձատոն, Նիդեռլանդների կոմկուսի Կենտկոմի նախագահ Է. Իզերաուդը, Նիկարագուայի ազգային ազատագրության սանդինական ճակատի ազգային ղեկավարության գործադիր հանձնաժողովի կոորդինատոր Դ. Օրտեգան։

Երեկոյան նիստում ելույթ ունեցան ԼՄԲԿ Կենտկոմի առաջին քարտուղար Վ. Յարուզելսկին, Չիլիի կոմկուսի Կենտկոմի քաղհանձնաժողովի և քարտուղարության անդամ Վ. Տեյտելբոյմը, Ֆինլանդիայի կոմկուսի նախագահ Ա. Սալոոն, Հնդկաստանի կոմունիստական (մարքսիստական) կուսակցության Կենտկոմի գլխավոր քարտուղար Ե. Մ. Շ. Նամբուդիրիպադը, Չեխոսլովակիայի կոմկուսի Կենտկոմի գլխավոր քարտուղար Գ. Հուսակը, Ֆրելիմո կուսակցության (Մոզամբիկ) Կենտկոմի քաղբյուրոյի անդամ Մ. Դուշ Սանտուշը, Սուդանի կոմկուսի Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Նիգուդը, Բելգիայի սոցիալիստական կուսակցության (Ֆլամանդցիներ) ղեկավարության անդամ Ժ. Վեյնինքսը, Ռումինիայի կոմկուսի գլխավոր քարտուղար Ն. Չաուշեսկուն։

# ԸՆԿԵՐ Մ. Ս. ԳՈՐԲԱՉՈՎԻ ԵԼՈՒՅԹԸ

Հարգելի ընկերնե՛ր, թանկագին բարեկամնե՛ր։

Վերստին ողջունում եմ ձեզ արդեն որպես մեր այս հանդիպման մասնակիցների, որն ամեն տեսակետից անսովոր է, արտացոլում է այն խոր փոփոխությունները, որ ապրում է արդի աշխարհը։

Օգտվելով առիթից, շնորհակալություն եմ հայտնում, որ եկել եք մեր երկիր՝ մասնակցելու մեր հանդիսություններին։ Դա մեզ համար թե պատիվ է, թե մեծ աջակցություն։

Թանկագին ընկերնե՛ր։ Բարեկամնե՛ր։ Դուք բոլորդ ներկա էիք Հոկտեմբերի 70-ամյակին նվիրված հանդիսավոր նիստին։ Դա ինձ ազատում է նորից մեր գործերի մասին խոսելու անհրաժեշտությունից։ Այստեղ ես կցանկանայի հաղորդել որոշ նկատառումներ՝ ի շարունակումն այն բանի, ինչ ասել եմ զեկուցման մեջ։

Երբ Եվրոպայում և աշխարհում հանդարտեց Հոկտեմբերյան հեղափոխության ծնած հզոր ալիքը, Վ. Ի. Լենինը մյուսներից շուտ հասկացավ դեպի այն նպատակներն ընթանալու ամբողջ բարդությունը, որոնք, ինչպես թվում էր շատերին, այդքան մոտեցրել էր հեղափոխությունը։ Նէպի նրա կոնցեպցիան խաղաղ գոյակցության («խաղաղ համակեցության») նրա իսկ գաղափարը նախապես միայն քաղաքական, անգամ դիվանագիտական ոլորտից փոխադրեց դարաշրջանի հիմնարար օրենքների ոլորտ։

Ավելի ուշ, ճիշտ է, պատահում էր, գերիշխում էին այլ պատկերացումներ։ Բայց հիմա մենք վերջնականապես հաղթահարել ենք պատմությունը կեղծելու փորձերը, երբ լինում էին ժամանակներ, որ ելնում էին ոչ այն բանից, ինչ կար, այլ ինչ ցանկալի էր տեսնել։

80-ական թվականներին հստակորեն սկսեցին նշմարվել համաշխարհային զարգացման առանձնահատկությունները, որոնք կուտակվել ու հասունացել էին ամբողջ հետպատերազմյան ժամանակաշրջանում։ Դրանք նախ և առաջ միջուկային-դարաշրջանի առանձնահատկություններն են, որոնք առաջին պլան են մղել մարդկության բուն գոյատևման պրոբլեմը։ Դա, այնուհետև, համաշխարհային տնտեսական կապերի բարդացման, աշխարհի երկրների ու ժողովուրդների փոխկապվածության ուժեղացման գիտատեխնիկական հեղափոխության կողմից խթանվող պրոցեսն է, բազմազանության և հակասականության պայմաններում նրա ամբողջականության ձևավորումը։ Դա, վերջապես, այն համընդհանուր պրոբլեմների սրումն է, որոնք մարտակոչ են նետում ժամանակակից կեցության վտանգներին, տեմպերին ու լարվածություններին հարմարվելու մարդու բուն կենսաբանական ընդունակությանը։

Այս ամենը նոր կողմերով է լույս սփռում խաղաղ գոյակցության գաղափարի բովանդակությանը, որը քաղաքական շարժումներից պահանջում է իր խնդիրների նոր վերլուծություն և վերաիմաստավորում, ստեղծված գաղափարախոսական սխեմաների ու ստերեոտիպերի հաղթահարում։

Սա հեշտ գործ չէ։ Ոչ ոք պատրաստի դեղատոմսեր չունի։ Հազիվ թե որևէ մեկի ձեռքին կա Արիադնայի թելի կծիկը, որն օգներ ելք գտնել ներկա հակասական աշխարհի լաբիրինթոսից։ Շարադրելով նոր մտածողության մեր կոնցեպցիաները, մենք ամենևին էլ ճշմարտությունն ասողի մենաշնորհի չենք հավակնում. մենք ինքներս որոնում ենք և ուրիշներին էլ հրավիրում ենք համատեղ որոնել այնպիսի ուղիներ, որոնցով մարդկությունը կկարողանար մեր օրերի «ականապատ դաշտից» անցնել դեպի միջուկային զենքից ու բռնությունից զերծ XXI դար։

Իհարկե, պատմական հեռանկարում հենց սոցիալիզմը (այսպիսին է մեր համոզմունքը) վճռական ավանդ կմուծի քաղաքակրթության զարգացման ճանապարհին ծագած կրիտիկական կետերի հաղթահարման գործում։ Հենց այդ հասարակարգը պոտենցիալ հնարավորություն ունի արդյունավետորեն ներգործելու այն հեգելյան «չափի», շահերի այն հաշվեկշռի որոնման վրա, որոնք մարդկությանը հնարավորություն տան հասնելու սկզբունքորեն նոր, նրա համար փրկարար մակարդակի։ Սոցիալիզմի պոտենցիալը դեռ ամենևին էլ լրիվ չի բացահայտվել։



Ըստ էության, տեղի է ունենում սոցիալական խորագույն հեղափոխություն, որի ակունքները սկիզբ են առնում Հոկտեմբերից։ Բայց դրա տևականությունը, նորությունն ու անհամաչափությունը, առաջադիմական տեղաշարժերի և դեպի հետ «գլորումների» զուգակցումն ու գոյակցությունը, հեղափոխական ու էվոլյուցիոն պրոցեսների հերթափոխությունն ու փոխադարձ կապը անկենսական են դարձնում ըստ հին դասագրքերի կազմված ամեն մի տրամաբանական սխեմա։

Դարաշրջանի սոցիալական շարժման տրամաբանությունը ավելի ու ավելի է ի հայտ գալիս։ Նրա էությունը շահագործողական հասարակության նյութական ու հոգևոր ինքնավարկաբեկումն է։

Ո՛չ սոցիալիզմի պատմության բացասական կողմերը, ո՛չ մարքսիզմը ժխտողների ամբողջ մատենաշարերը, ո՛չ աշխարհում գաղափարախոսական բանավեճի սրությունն ու նրբահնարությունը չկարողացան հերքել այն հետևությունը, որ կապիտալիզմը այլընտրանք ունի։ Եվ այդ այլընտրանքը սոցիալիզմն է։

Սակայն զարգացման տարատեսակությունը մնում է։ Պատմական պարույրի յուրաքանչյուր հերթական գալարում հին աշխարհի ուժերը հնարավորություն ունեն վերացնել տվյալ պահի համար առավել վտանգավոր հակասությունները և երկարացնել իրենց տիրապետությունը։ Այդպես էլ եղավ, օրինակ, կապիտալիզմի կողմից գիտատեխնիկական հեղափոխության օգտագործման առնչությամբ։ Իհարկե, կապիտալիստական հասարակարգի ներքին հակամարտությունները յուրաքանչյուր նոր փուլում վերարտադրվում են, բայց արդեն նորովի, այլ կերպ։

Ի դեպ, գիտատեխնիկական հեղափոխության նոր տեխնոլոգիական փուլը սոսկ իր սկզբնական փուլում է, և կապիտալիստական ձևով նրա օգտագործման գլխավոր հետևանքները այս փուլում դեռ առջևում են։ Այդ պրոբլեմատիկայի հիմնարար տեսական հետազոտությունը նույնպես նոր է սկսվում։ Կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի մշտական խորացման սովորական բանաձևի հետևում նոր է սկսել երևալ արտադրության եղանակում տեղի ունեցող պրոցեսի էությունը, էլ չենք խոսում քաղաքական կանխատեսումների մասին։

Պրոցեսների ըմբռնման նոր մակարդակի ձեռքբերումը արգելակել է նաև այն հանգամանքը, որ ռեալ սոցիալիզմը տեխնոլոգիական զարգացման մակարդակով դեռևս հետ է մնում կապիտալիզմից։ Այդ հետ մնալը հաղթահարելու նախադրյալները ձևավորվում են սոցիալիստական հասարակության հեղափոխական վերակառուցման, նրա որակապես նոր վիճակի անցնելու ընթացքում։ Բայց հենց նա՝ վաղվա այդ հասարակությունն էլ սոցիալիզմի այն ավելի բարձր տիպն է, որը կօգնի նրանց, ովքեր սոցիալական այլընտրանք են փնտրում։

Եթե դուք նկատել եք, հանդիսավոր նիստի զեկուցման մեջ ես խոսեցի կապիտալիզմի օրինաչափությունների երկու հատկապես վտանգավոր դրսևորումների մասին՝ ռազմականացման և զարգացող աշխարհի հետ ոչ համարժեք փոխանակության մասին։ Բայց դրանք հնարավոր են միայն համապատասխան պետական քաղաքականության միջոցով։ Իսկ այդ քաղաքականությունը պաշտպանություն է վայելում Արևմուտքում, քանի դեռ պահպանվում է երկյուղը «սովետական սպառնալիքից» և քանի դեռ ուղեղներում ամուր նստած է այն համոզմունքը, թե կան «գլխավոր» ազգային շահեր և կան երկրորդականներ, կան համաշխարհային քաղաքականության ու էկոնոմիկայի «սուբյեկտներ» և կան «օբյեկտներ», այսինքն՝ նեոգաղութատիրության ոլորտ։

Մեր վերակառուցումը, իր բոլոր միջազգային հետևանքներով հանդերձ, հօդս է ցնդեցնում երկյուղը «սովետական սպառնալիքից»։ Եվ ռազմամոլությունը կորցնում է իր քաղաքական արդարացումը։ Սպառազինությունների վրա ռեսուրսների վատնման անընդունելիությունն ու կործանարարությունը ավելի ու ավելի ակնհայտ են դառնում նաև էկոլոգիական վտանգի պայմաններում և գործազրկության աճի կապակցությամբ, որը գիտատեխնիկական հեղափոխության նոր փուլում վերածվում է միանգամայն այլ կարգի պրոբլեմի, քան առաջ էր։ Ահազանգեր է տալիս նաև ֆինանսական համակարգը, որը չի դիմանում սպառազինությունների մրցավազքի, աստղաբաշխական պետա-

Մենք ավելի լավ ճանաչեցինք միմյանց և գլխավորը՝ համոզվեցինք, որ կարող ենք իրար հետ խոսել անկեղծ, շիտակ, հարգալից, ես կասեի՝ ընկերաբար։

Կարծում եմ, որ հանդիպումը շատ սնունդ տվեց ստեղծագործական ճանաչողության ոգով, մեր ապրած աշխարհի և այդ աշխարհում մեր նոր դերի իմաստավորման ոգով հետագա մտորումների, որոնումների համար։

Թանկագին ընկերներ, մեզ համար չափազանց հետաքրքրական ու կարևոր էր ձեզանից լսել, ձեր ասածներից իմանալ այն պրոցեսների ձեր ըմբռնման, դրանց նկատմամբ ձեր վերաբերմունքի մասին, որոնք տեղի են ունենում արդի սովետական հասարակության մեջ։ Այլ կերպ ասած՝ մեր վերակառուցման նկատմամբ։ Ձեր ասածները մենք դիտում ենք որպես աջակցություն մեր ոչ դյուրին աշխատանքին, որպես մեր պայքարի հետ համերաշխության դրսևորում։

ՍՄԿԿ-ն, ամբողջ ժողովրդի ակտիվ մասնակցությամբ զարգացնելով, նորացնելով սովետական հասարակությունը, իր առջև խնդիր է դնում ի հայտ բերել սոցիալիզմի, սոցիալիստական դեմոկրատիայի պոտենցիալը, և մեր հասարակությունը հասցնել որակապես նոր բնագծերի։ Մենք այդ աշխատանքը, որ կատարում ենք հանուն մեր ժողովրդի, նաև դիտում ենք որպես աշխատանք հանուն ամբողջ մարդկության։

Ես ուզում եմ ձեզ ի սրտե, անկեղծորեն շնորհակալություն հայտնել այն բանի համար, որ դուք արձագանքեցիք, եկաք Մոսկվա և մասնակցեցիք Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 70-ամյակին նվիրված մեր հոբելյանական միջոցառումներին։

Մեր կուսակցության ու ամբողջ ժողովրդի անունից շնորհակալություն եմ հայտնում ձեզ։ Ձեզ, թանկագին ընկերներ, մաղթում եմ ամենայն բարիք և հաջողություններ ձեր պայքարում։

---



# ՀՈԿՏԵՄԲԵՐԻ ԴՐՈՇԻ ՆԵՐՔՈ

**Հ. ՈՍԿԱՆՅԱՆ**
**Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահության նախագահ**

ՄԱՐԴԿՈՒԹՅԱՆ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՄԵՋ եղել են ոչ քիչ հեղափոխություններ, որոնք կարևոր դեր են խաղացել ժողովուրդների ճակատագրում։ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը դրանց մեջ հատուկ տեղ է զբաղեցնում և՛ իր բնույթով, և՛ իր պատմական հետևանքներով։ Այն բացեց համընդհանուր հեղափոխական վերափոխումների դարաշրջանը, կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու դարաշրջանը։ Դրեց շահագործողական կարգերից մարդկությանը փրկելու, գիտական կոմունիզմի գաղափարները կյանքի մեջ մարմնավորելու սկիզբը։

Ցանկացած հասարակական երևույթի պատմական նշանակությունը ստուգվում է ժամանակի միջոցով։ Դեռևս 1921 թ. Վ. Ի. Լենինն ասել է. «Որքան մեզանից հեռանա այդ մեծ օրը, այնքան պարզ կդառնա պրոլետարական հեղափոխության նշանակությունը Ռուսաստանում»։

Այդ հիշարժան օրից անցել է յոթ տասնամյակ, պատմության չափանիշով ժամանակը մեծ չէ։ Այդ ժամանակաընթացքում համաշխարհային հեղափոխական շարժումը հարստացել է հսկայական և բազմակողմանի փորձով, որն ընդլայնել և հարստացրել է պատկերացումը հեղափոխական պայքարի ուղիների ու մեթոդների վերաբերյալ։ Այդ փորձի լույսի ներքո է՛լ ավելի պարզ է դարձել սոցիալիստական հեղափոխության ընդհանուր օրինաչափության նշանակությունը։

Հոկտեմբերյան հեղափոխությունը հասունացել է հին աշխարհի ընդերքում, և այն բռնկվեց նրա ամենաթույլ օղակում՝ Ռուսաստանում, որտեղ կենտրոնացվել էին կապիտալիզմի հիմնական հակասությունները, դասակարգային խոր հակամարտությունները։ Տեղի ունեցավ ոչ միայն քաղաքական իշխանության փոփոխություն։ 1917 թ. Հոկտեմբերը նշանակում էր սոցիալ-տնտեսական խոր հեղաշրջում։ Բանվոր դասակարգին դնելով իշխանության գլուխ՝ Հոկտեմբերը ազատագրեց աշխատավորներին շահագործումից, նրանց ձեռքը տվեց ձեռնարկությունները, բանկերը, երկաթուղիները, հողը հանձնեց գյուղացիներին, վերացրեց ազգային ճնշումը, երկիրը դուրս բերեց իմպերիալիստական պատերազմից։

Սոցիալիստական հեղափոխության հաղթանակը աշխատանքի մարդուն ընձեռեց իսկական իրավունքներ և ազատություն, ամրապնդեց սովետների իշխանությունը, որն իր իսկ ժողովրդի հայտնագործած պետական կյանքի դեմոկրատական ձևն է։

Սոցիալիստական հեղափոխությունը ցարական Ռուսաստանի բոլոր ժողովուրդների համար ապահովեց փաստական հավասարություն՝ քաղաքական, տնտեսական, կուլտուրական առումով։ Սոցիալիստական շինարարության տարիներին տնտեսական աճի առավել ցածր մակարդակի վրա գտնվող ժողովուրդներին ցույց էր տրվում հսկայական օգնություն. հատկացվում էին խոշոր կապիտալ ներդրումներ արդյունաբերության, գյուղատնտեսության և

ժիմներին։ Աշխարհի ժողովուրդները, ոգեշնչված ՍՍՀՄ-ի օրինակով, մտան սոցիալական առաջընթացի համար մղվող պայքարի նոր փուլ։

Հեղափոխությունը, որի շնորհիվ Հայաստանի աշխատավորները հնարավորություն ստացան պատմական կարճ ժամանակամիջոցում ապահովելու հանրապետության էկոնոմիկայի բուռն վերելքը, պայմաններ ստեղծեց լուծելու հայ ժողովրդի կենսական հարցերից մեկը՝ ճակատագրի կամքով աշխարհով մեկ ցրված հայերի հայրենադարձությունը։ Հայրենիք ներգաղթեց ավելի քան 200 հազար մարդ, որոնք ակտիվորեն մասնակցում են նոր հասարակարգի կառուցմանը։

Սովետական իշխանության տարիներին իրականացավ հանրապետության ինդուստրացումը, որն արմատապես փոխեց էկոնոմիկայի կառուցվածքը, և Հայաստանը հետամնաց ագրարային երկրամասից վերածվեց ժամանակակից զարգացած բարձր ինդուստրիալ հանրապետության։ Հայաստանում այժմ կա ավելի քան 600 արդիական արդյունաբերական ձեռնարկություն։ Վերջին տասնամյակներին ստեղծվեցին և լայնորեն զարգացան մեքենաշինությունը, էներգետիկան, քիմիան, գունավոր մետալուրգիան, էլեկտրոնիկան, ռադիոարդյունաբերությունը, շինանյութերի արտադրությունը, թեթև, սննդի և այլ ճյուղեր։ Էապես փոխվեց հանրապետության տնտեսական քարտեզը, աճեցին նոր արդյունաբերական կենտրոններ՝ Քաջարանը, Հրազդանը, Ապարակը, Աբովյանը, Ջարենցավանը և այլն։ Այժմ հանրապետության արդյունաբերության արտադրանքը արտահանվում է աշխարհի գրեթե 100 երկիր, բոլոր աշխարհամասերը։

Դարեր շարունակ դաժան ու ողբերգական է եղել հայ գյուղացու ճակատագիրը։ Սովետական իշխանությունը արմատապես վերափոխեց գյուղի դեմքը։ Այսօր գյուղատնտեսությունը զարգանում է բուռն տեմպերով։ Նրա ինտենսիֆիկացման կարևոր ազդակ են ռոռոգումն ու մելիորացումը։ Իսկ վերջին տարիներին հանրապետության գյուղատնտեսության զարգացման մի շարք արմատական հարցերի լուծման վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի ընդունած որոշումներն ունեն կարևոր, հիրավի պատմական նշանակություն։

Լայն ճանաչման են արժանացել հայ գիտնականների ծանրակշիռ շատ հետազոտություններ։ Մեծ հաջողություններ են ձեռք բերվել հատկապես աստղաֆիզիկայի և մաթեմատիկայի, մեխանիկայի և տարրական մասնիկների ֆիզիկայի, էլեկտրոնիկայի, հանքաբանության և սեյսմոլոգիայի, միկրոկենսաբանության, հասարակական գիտությունների և գիտության այլ ճյուղերի զարգացման ասպարեզում։ Գիտությունը սահմանում է արտադրողական ուժերի զարգացումը, կանխորոշում այն առաջադիմական միտումները, որոնք արմատավորվելու են ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերում։

Հայաստանում սովետական իշխանության հաստատման նախօրեին նրա բնակչության գրագիտությունը չէր գերազանցում 20 տոկոսը, մասնագետների սուր կարիք էր զգացվում։ Օրինակ, 1920 թ. Հայաստանում կային ընդամենը 77 բժիշկներ, տասնյակ ինժեներներ և այլ մասնագետներ։ Այժմ հանրապետության առողջապահական հիմնարկներում աշխատում են ավելի քան 10 հազար բժիշկներ, իսկ ժողովրդական տնտեսության մեջ՝ 150 հազարից ավելի բարձրագույն կրթությամբ մասնագետներ։ Սովետահայ գրականության և արվեստի լավագույն ստեղծագործությունները մտել են երկրի մշակույթի գանձարանը։ Նրանցում հիանալի կերպով արտացոլվում են մեր պետության կարևոր իրադարձությունները՝ մեծ Հոկտեմբերի և քաղաքացիական պատերազմի հեղափոխական մարտերից մինչև Հայրենական մեծ պատերազմի հաղթական ավարտն ու հետպատերազմյան հնգամյակները։

Դարերի ընթացքում Հայաստանը դիտվել է որպես բնական ռեսուրսների պահեստարան։ Եղել է ժամանակ, երբ դրանք անսպառ են համարվել և ինչ-որ չափով օգտագործվել ոչ ռացիոնալ կերպով։ Եվ այսօր մենք ունենք ոչ քիչ լուրջ էկոլոգիական պրոբլեմներ։ Սկսած 30-ական թվականներից՝ հանրապետությունում ստեղծվեց քիմիական խոշոր արդյունաբերություն, դրսևորվեց չմտածված վերաբերմունք ջրային ռեսուրսների, հատկապես Սևանի պահպանության և օգտագործման նկատմամբ։ ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի օգնությամբ Հայաստանի կոմկուսի Կենտկոմը և կառավարությունը վերջին տարիներին ձեռնարկեցին մի շարք խոշոր միջոցներ շրջակա միջա-



վայրի պահպանության, հանրապետության էկոլոգիական վիճակը բարելավելու համար։ Հրազդանի լեռնաքիմիական կոմբինատը վերապրոֆիլավորվեց էկոլոգիապես մաքուր ձեռնարկության՝ «Հրազդանմեքենա»։ Փակվել են վտանգավոր արտադրությունները Քանաքեռի ալյումինի, Կիրովականի քիմիական գործարաններում, «Նաիրիտ» գիտաարտադրական միավորումում։ Միջոցառումներ են իրականացվել Ալավերդու լեռնամետալուրգիական կոմբինատի արտանետվածքները օգտագործելու համար։ Փորվել է 48 կիլոմետրանոց թունել, որը Արփայի ջրերը մղում է Սևան, կառուցվում են խոշոր ջրամբարներ, ստեղծվում են լրացուցիչ հիդրոտեխնիկական կառուցվածքներ՝ ոռոգման նպատակով Սևանի ջրի պահանջը պակասեցնելու համար և այլն։ Արված է շատ, սակայն հարկավոր է ավելի մեծ, լարված աշխատանք ծավալել այդ ասպարեզում, քանի որ հանրապետության այսօրվա էկոլոգիական վիճակը ամենևին էլ կատարյալ չէ։ Լուրջ մտահոգության տեղիք է տալիս։

Հայացք ձգելով անցյալի վրա՝ այսօր հստակորեն տեսնում ենք երկրի, հանրապետության առջև ծառացած խնդիրները։ ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թ. ապրիլյան պլենումը նոր ազդակ տվեց երկրի զարգացմանը, սովետական ժողովրդի առջև դրեց նոր պատմական խնդիրներ, որոնք ամրապնդվեցին ու զարգացվեցին ՍՄԿԿ XXVII համագումարում, Կենտկոմի 1987 թ. հունվարյան և հունիսյան պլենումներում։

Երկրում տեղի ունեցող վերափոխումները, դրանց առաջ մղող գաղափարները ամենայն հավանականությամբ վկայում են, որ Հոկտեմբերից հետո ընկած տարիներին մենք չենք կորցրել դեպի կոմունիզմ տանող մեծ ճանապարհը կարող նախագնացների դերը։ Մեր հեղափոխական միտքը չի բթացել, մեր ստեղծագործական եռանդը չի սպառվել, իսկ մեր քաղաքական կամքը մնում է այնպես անսասան, ինչպես այն ունեցել են բոլշևիկները, որոնք պրոլետարիատին բարձրացրին՝ նվաճելու իշխանությունը, ստեղծելու նոր հասարակություն։ Ինչպես և հեղափոխականների լենինյան սերունդը, մենք հասկանում ենք, որ հասարակական առաջընթացի նոր բարձունքներին չեն հասնում ինքնաբերաբար։ Եվ կուսակցության որոշումները Կենտկոմի 1985 թ. ապրիլյան պլենումից հետո փաստորեն եռանդով գործելու պահանջ են՝ առավել լիովին օգտագործելու սոցիալիզմի հնարավորություններն ու առավելությունները՝ հանուն սովետական մարդկանց բարօրության, հանուն ժողովուրդների բարօրության։

Մտքի և գործողության միասնություն, ընդունած որոշումների իրականացման ասպարեզում բոլշևիկյան համարձակություն և հաստատակամություն՝ ահա թե ինչն է կազմում ժամանակի կենդանի կապը, որը ՍՄԿԿ-ի այսօրվա աշխատանքը զուգակցում է 1917 թվականի հեղափոխականների ստրատեգիային ու տակտիկային։

Կուսակցության XXVII համագումարը երկրի առջև խնդիր դրեց վճռականորեն բարեփոխել սոցիալիստական արտադրական հարաբերությունները, ապահովել դրանց կայուն համապատասխանությունը արտադրողական ուժերին։ Շատ բան է հարկավոր անել նաև մեր կարգերին յուրահատուկ սոցիալական արդարության խստագույն պաշտպանության ասպարեզում։ Ընդլայնվում և հարստանում են ժողովրդապետության ձևերը, որոնց հաստատումը նաև ժողովրդական դեպուտատների տեղական սովետների ընթացիկ տարվա ընտրություններն էին, ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարումը։

Կուսակցության XXVII համագումարի պահանջների լույսի ներքո մեր հանրապետության առջև ծառացել են բարդ և լայնամասշտաբ խնդիրներ։ Տասներկուերորդ հնգամյակում անհրաժեշտ է արդյունաբերական արտադրանքի արտադրությունն ավելացնել 24—26 տոկոսով, վերազինել և ընդլայնել մեքենաշինական, քիմիական և թեթև արդյունաբերության, գունավոր մետալուրգիայի, շինանյութերի արտադրության մի շարք գործող ձեռնարկություններ։ Պետք է կառուցվեն ծրագրավորվող հրահանգապարատների արտադրության, ավտոմատ մանիպուլյատորների համար հիդրոսարքավորումների, հատուկ տեխնոլոգիական սարքավորումների գործարաններ։ Այսինքն՝ հանրապետությունում պահպանվում է նվազ մետաղատար և էներգատար արտադրանքի արտադրության զարգացման միտումը։ Հնգամյակում նախատեսվում է վերակառուցել ոռոգիչ համակարգերը, շահագործման հանձնել 35 հազար

# ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԷԿՈՆՈՄԻԿԱՆ. ՆՎԱՃՈՒՄՆԵՐ ԵՎ ՊՐՈԲԼԵՄՆԵՐ

**Մ. ՔՈԹԱՆՅԱՆ**
**ՀՍՍՀ գիտությունների ակադեմիայի ակադեմիկոս, ԳԱ տնտեսագիտության ինստիտուտի դիրեկտոր**

ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԾ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅՈՒՆԸ շրջադարձային եղավ Ռուսաստանի բոլոր ժողովուրդների քաղաքական ազատության և սոցիալ-տնտեսական զարգացման բնագավառում: Դրա փայլուն ապացույցներից մեկը սովետական կարգերի հաստատումից հետո (1920 թ. նոյեմբեր) Հայաստանի հասարակական-քաղաքական և սոցիալ-տնտեսական զարգացման օրինակն է:

Հայ ժողովուրդը, պատմական նոր իրադրության մեջ, սովետական մյուս ժողովուրդների հետ միասին, փոխադարձ օգնության շնորհիվ հասավ տնտեսական, գիտատեխնիկական, կուլտուրական և հոգևոր զարգացման աննախադեպ մակարդակի: Հայկական ՍՍՀ-ն առավել ակնառու նվաճումներ է ձեռք բերել նաև նյութական արտադրության ասպարեզում: Սովետական իշխանության տարիներին մեզ մոտ ստեղծվեց ժամանակակից բազմաճյուղ արդյունաբերություն, որն իր ուրույն տեղն ունի Միության արդյունաբերության համակարգում: Սննդի և թեթև արդյունաբերության հետ միասին լայնորեն զարգացել են հաստոցաշինությունը, ռադիոէլեկտրոնիկան, սարքաշինությունը, փոքր քիմիան, էլեկտրատեխնիկան և այլ ճյուղեր, որոնք առաջատար դեր են կատարում գիտատեխնիկական հեղափոխության իրականացման գործում:

Հանրապետությունում առանձնապես մեծ տեմպերով զարգացավ արդյունաբերության «Ա» խումբը: 1913 թվականի համեմատությամբ, այն 1986 թվականին ավելացավ 1.066,6 անգամ (ամբողջ արդյունաբերության մեջ՝ 550,4 անգամ): «Բ» խումբն աճել է 274,1 անգամ: Պետք է նկատել, սակայն, որ արդյունաբերության «Ա» և «Բ» խմբերի զարգացման տեմպերը սոցիալիստական շինարարության տարբեր ժամանակներում ունեցել են տարբեր հարաբերակցություն: Վերջին երկու տասնամյակում առավել արագ զարգացավ «Բ» խումբը: Այսպես, եթե ամբողջ արդյունաբերության արտադրանքը 1986 թվականին, 1970 թվականի համեմատությամբ, աճեց մոտ 3 անգամ, ապա «Բ» խմբինը՝ 3,3, իսկ «Ա» խմբինը՝ 2,8 անգամ: Այդ համամասնությունը պահպանվում է նաև տասներկուերորդ հնգամյակում:

Հետպատերազմյան տարիներին հանրապետությունում առանձնապես զարգացավ մեքենաշինությունը: 1986 թվականին մեքենաշինության և մետաղամշակության արտադրանքի ծավալը, 1940 թվականի համեմատությամբ, ավելացավ 1.328,3 անգամ՝ ամբողջ արդյունաբերության արտադրանքի ծավալի 63,6 անգամ աճի պայմաններում: Մեքենաշինության արտադրանքի տեսակարար կշիռը 1986 թվականին հասավ 31,8 տոկոսի: Ժողովրդական տնտեսության տեխնիկական առաջադիմությունը և արտադրության արդյունավետությունը բարձրացնող հիմնական ճյուղերի (մեքենաշինություն, էլեկտրաէներգետիկա, քիմիա և նավթաքիմիա) տեսակարար կշիռը հասավ 42,1 տոկոսի:

Հայկական ՍՍՀ արդյունաբերությունն իր ձևավորված կառուցվածքով և զարգացման նախագծումներով տասներկուերորդ հնգամյակում և մոտակա



հեռանկարում մեր երկրի, և ոչ միայն մեր երկրի, չափանիշներով ժամանակակից առաջադիմական համալիր է:

Հետպատերազմյան տարիներին ստեղծվեցին արդյունաբերության նոր ճյուղեր, հիմք դրվեց ավելի քան 30 տեսակի կարևորագույն արդյունաբերական և մեկուկես տասնյակ կուլտուր-կենցաղային ու տնտեսական նշանակության այնպիսի արտադրատեսակների թողարկման, որոնց գծով հանրապետությունն իր ուրույն տեղն ունի աշխատանքի միութենական բաժանման համակարգում: Էական է Հայկական ՍՍՀ-ի ներդրումը տարբեր հզորության փոփոխական հոսանքի գեներատորների, էլեկտրաշարժիչների, շարժական էլեկտրակայանների, տրանսֆորմատորների, լուսավորման էլեկտրալամպերի, կաբելի և արդյունաբերական այլ կարևորագույն արտադրատեսակների բնագավառում:

1986 թ. մեր հանրապետությունում 5 օրում արտադրվեց այնքան արդյունաբերական արտադրանք, որքան ամբողջ 1940 թվականին: Մեկ օրում արտադրվում է այնքան էլեկտրաէներգիա, որքան 1940 թվականին՝ 37 օրում: 1986 թ. մեկ օրում արտադրվել է 53 հազար զույգ կոշիկ կամ 18 անգամ ավելի, քան 1940 թվականին, 263 հազար զույգ գուլպա-նասկի (10 անգամ), 169 հազար տրիկոտաժե սպիտակեղեն (30 անգամ), 100 հազար տրիկոտաժե վերնազգեստ (40 անգամ):

Հանրապետության արդյունաբերության արագ տեմպերով զարգացումը զուգակցվեց նրա տեխնիկական մակարդակի բարձրացման, արտադրության միջոցների և թողարկվող արտադրանքի նորացման հետ: Նոր տեխնիկայի ներդրման միջոցառումները վերջին 16 տարում կրկնապատկվեցին: Եթե 1971—1975 թթ. դրանց թիվը կազմել է 3.832, ապա 1986 թ.՝ 7.520: Բնորոշն այն է, որ ներդրված միջոցառումների միջին տարեկան տնտեսական արդյունքը նույն ժամանակամիջոցում 26,3 մլն ռուբլուց հասավ 75,4 մլն-ի: Այսինքն՝ ներդրված միջոցառումների թվից ավելի արագ աճեց:

Անցած հնգամյակների տարիներին մեծ առաջընթաց կատարվեց նոր տեխնիկայի բնագավառում: Հանրապետությունում 1986 թ. ստեղծվել են 119 նոր տիպի մեքենա, սարքավորում, ապարատ, սարք, ավտոմատացման միջոցներ, որոնք հնարավորություն են տալիս նորացնելու մեքենաշինական ձեռնարկությունների արտադրանքը: Բավական է ասել, որ դրանց արտադրանքի մոտ 47 տոկոսը (1986 թ.) յուրացվել է վերջին հինգ տարում, մինչդեռ 1975 թ. այն կազմել է 32,2 տոկոս: Պետք է նկատել, որ ստեղծված նոր տիպի մեքենաների, սարքավորումների, ապարատների, սարքերի և ավտոմատացման միջոցների 31 տոկոսը գերազանցում է հայրենական և արտասահմանյան լավագույն նմուշները: Արդյունաբերության տեխնիկական մակարդակի բարձրացման կարևոր ցուցանիշներից է մեքենայացված և ավտոմատացված գծերի, տեղամասերի, արտադրամասերի, արտադրությունների և ձեռնարկությունների ստեղծումը, որը, ինչ խոսք, մեր ժամանակի արդյունաբերության զարգացման գլխավոր ուղղությունն է: Բավական է նշել, որ 1985 թվականի հուլիսի 1-ի դրությամբ, հանրապետության արդյունաբերության բոլոր ճյուղերում գործել են 1.744 մեքենայացված հոսքային գծեր (1975 թ.՝ 1.063), 403 ավտոմատացված գծեր (1975 թ.՝ 140), ծրագրային կառավարման 1.170 սարքավորում, 888 կոմպլեքսային մեքենայացված և ավտոմատացված տեղամաս, արտադրամաս և արտադրություն (1975 թ.՝ 296,29):

Չնայած նյութական արտադրության տեխնիկական մակարդակի բարձրացման գծով նման էական տեղաշարժերին, այնուամենայնիվ, հանրապետության ժողովրդական տնտեսության մեջ դեռևս մեծ տեսակարար կշիռ ունի ձեռքի աշխատանքը: Այսպես, 1985 թ. արդյունաբերության մեջ ձեռքի աշխատանքի գերակշռությամբ աշխատում էր բանվորների 40,1 տոկոսը, կոլտնտեսություններում՝ բուսաբուծության մեջ 91,9, անասնապահության մեջ՝ 91,5 տոկոսը, սովխոզներում համապատասխանաբար՝ 92,7 և 93,7, շինարարության մեջ՝ 65,8 տոկոսը:

Արտադրության տեխնիկական զինվածությունը, աշխատողների կուլտուր-տեխնիկական մակարդակի աճի հետ միասին, հնարավորություն տվեց բարձ-

րագ փոփոխվող, ինչպես նաև նորաձև ապրանքների նկատմամբ բնակչության պահանջարկի բավարարմանը։

Հանրապետության արդյունաբերության առաջընթացի համար կարևոր նշանակություն ունեն արտաքին տնտեսական կապերի զարգացումն ու կատարելագործումը։ Նպատակահարմար է ՏՓԽ-ի, ինչպես նաև կապիտալիստական երկրների ֆիրմաների համագործակցությամբ ստեղծել համատեղ արդյունաբերական ձեռնարկություններ և՛ արտադրության միջոցների, և՛ սպառման ապրանքների արտադրության բնագավառներում։ Մենք մեծ հնարավորություններ ունենք, օրինակ, չեխոսլովակյան ֆիրմաների հետ կազմակերպել կերամիկական իրերի կամ այլ երկրների հետ՝ հանքային ջրերի լցման արտադրություններ և այլն։

Սովետական իշխանության տարիներին մեծ տեղաշարժեր կատարվեցին գյուղատնտեսության բնագավառում։ Մենք այժմ ունենք ժամանակակից տեխնիկայով հագեցված բազմաճյուղ գյուղատնտեսություն, որի համախառն արտադրանքը 1986 թ. նախապատերազմյան մակարդակը գերազանցել է 5,3 անգամ, այդ թվում՝ բուսաբուծությանը՝ 3,9, անասնաբուծությանը՝ 14,3 անգամ։

1986 թ. հանրապետության 523 սովխոզներ, 277 կոլտնտեսություններ, 67 միջտնտեսական ձեռնարկություններ և կազմակերպություններ ունեին 13.866 տրակտոր, 1.481 կոմբայն և մեծ քանակությամբ գյուղատնտեսական այլ մեխանիզմներ ու գործիքներ։

Առանձնապես մեծ չափերով ավելացել են ոռոգելի հողատարածությունները, որոնք 1986 թ. կազմեցին 316,4 հազար հեկտար՝ նախապատերազմյան 180 հազարի դիմաց։ Դա հնարավորություն տվեց առավել ինտենսիվ դարձնել հողագործությունը, ընդլայնել այգեգործությունն ու պտղաբուծությունը, մեծացնել կերարտադրության բազան և բարձրացնել անասնաբուծության մթերատվությունը։ Փաստորեն ոռոգումը հանրապետության գյուղատնտեսության ինտենսիվ զարգացման բանալին է։ Ահա թե ինչու ՀԿԿ Կենտկոմն ու կառավարությունն այդքան մեծ տեղ են տալիս ջրակուտակման և ոռոգման աշխատանքներին։

Գյուղատնտեսության ինտենսիվ վարման շնորհիվ բանջարեղենի արտադրության ծավալը, հանրապետության մեկ շնչի հաշվով, 1986 թ. հասավ 168 կգ (1940 թ. 24 կգ), խաղողինը՝ 71 կգ (1940 թ.՝ 49 կգ), մսինը (սպանդային քաշով)՝ 32 կգ (17կգ), կաթինը՝ 169 կգ (127 կգ), ձվինը՝ 180 հատ (34 հատ)։ Սակայն, չնայած այս ձեռքբերումներին, պետք է նկատել, որ հանրապետության գյուղատնտեսությունը զգալիորեն հետ է մնում նրան ներկայացված հասարակական պահանջներից։ Աշխատանքի կազմակերպման և կառավարման բնագավառում եղած լուրջ թերությունների հետևանքով ցածր է արտադրության արդյունավետությունը, որը չի համապատասխանում գյուղատնտեսության բնագավառում կատարված կապիտալ ներդրումների տարեցտարի աճող և ահռելի չափերի հասնող ծավալներին և տեխնիկական հագեցման աստիճանին։

Այս ամենից հետևում է, որ արդի պայմաններում գյուղատնտեսական արտադրության արդյունավետության բարձրացման, պարենի նկատմամբ բնակչության աճող պահանջմունքները բավարարելու և, ընդհանրապես, պարենային պրոբլեմը լուծելու, ինչպես նաև մթերքների պաշարներ ստեղծելու, համաշխարհային պարենային ֆոնդի ձևավորման բնագավառում մեր երկրին համապատասխան արժանի տեղ գրավելու համար անհրաժեշտ է արմատապես վերակառուցել գյուղատնտեսական արտադրության կազմակերպման, կառավարման ու պլանավորման համակարգը։ Տրամաբանական է, որ նման բարդ խնդրի լուծումը պատրաստի դեղատոմս չունի։ Ուստի անհրաժեշտ կլինի տարբեր տեսակետների ու մոտեցումների համադրման միջոցով գտնել պրոբլեմի լուծման ճիշտ ուղին։ «Ճշմարտության որոնումը,— նշեց Մ. Ս. Գորբաչովը հասարակական գիտությունների ամբիոնների վարիչների համամիութենական խորհրդակցությունում (1986 թ.),— պետք է ընթանա տարբեր տեսակետների զուգադրման, բանավեճերի ու քննարկումների, նախկին ստերեոտիպերի վերացման պայմաններում»։



Ուստի և առանձնակի ուժով մենք խոսում ենք՝ նոր գաղափարներ առաջ քաշելիս, համարձակության, նախաձեռնության անհրաժեշտության մասին»։

Ընդհանրացնելով մեր երկրում գյուղատնտեսության վարման, նրա անցած ուղու 70-ամյա փորձը՝ պարենային պրոբլեմը արմատապես լուծելու համար նպատակահարմար է անցնել արտադրության կազմակերպման ու կառավարման ճկուն համակարգի։ Դրա կարևոր ուղիներից մեկը, մեր կարծիքով, արդի ձևերին զուգահեռ, գյուղատնտեսական օգտագործելի հողերը վարձակալական հիմունքներով (5, 10, 15 տարի ժամկետով) կոլեկտիվներին, բրիգադներին, ընտանիքներին և անհատներին օգտագործման նպատակով տրամադրելն է։ Մենք դա պատկերացնում ենք հետևյալ կերպ. պետությունը յուրաքանչյուր հեկտարի հաշվով սահմանում է դրամական վարձաչափ։ Վերջինս տարբերակվում է՝ ելնելով հողերի բնական բերրիությունից, տեղադրությունից, հողի վրա կատարված կապիտալ ներդրումների միջին շահույթի մեծությունից, շինությունների, կառույցների ամորտիզացիայի չափից և այլն։

Յուրաքանչյուր վարձակալ, ելնելով իրեն հատկացված հողակտորի բնակլիմայական պայմաններից, տնտեսական շահավետությունից, ինքն է որոշում իր տնտեսության վարման ուղղությունը։ Այլ խոսքով՝ հողերի օգտագործման, գյուղատնտեսական կուլտուրաների մշակման, անասնապահական մթերքների արտադրության չափերի վերաբերյալ պլանային առաջադրանքներ չեն տրվում։

Պետությունը համապետական նպատակներով օգտագործվող պարենի ֆոնդը համալրում է պետական պատվերների կամ գնումների միջոցով։ Պլանավորվող տարում (հնգամյակում) այդ պատվերների (գնումների) նախնական չափերը որոշելուց հետո պետությունն իր մթերող կազմակերպությունների միջոցով պայմանագրեր է կնքում արտադրողների հետ՝ մթերքները պետությանը վաճառելու չափերի, գների և այլ պայմանների վերաբերյալ։

Համապետական պարենային ֆոնդի ձևավորման պետական պատվերների գնման գները պետք է երկրի մասշտաբով լինեն միասնական, որը կնպաստի տարբեր շրջանները գյուղատնտեսական մթերքների արտադրությամբ առավել արդյունավետ մասնագիտացնելու գործին։

Պետական գնման միասնական գների հիման վրա այս կամ այն գյուղատնտեսական մթերքների պատվերների կատարման պայմանագրեր կկնքեն միայն այն տնտեսությունները (վարձակալները), որոնց արտադրության պայմանները կհամապատասխանեն այդպիսի գներով արտադրանքին։ Ըստ տընտեսական շրջանների և արտադրության պայմանների՝ տնտեսությունների համար շահավետ կլինի գյուղատնտեսական տարբեր կուլտուրաների կամ մթերքների արտադրությունը։ Տնտեսությունները (վարձակալները) կարտադրեն այն, ինչը շահեկան և էժան է տվյալ բնակլիմայական պայմաններում։ Այլ խոսքով, կարտադրվի միայն շահավետ արդյունքը, հետևաբար գոյություն չեն ունենա վնասաբեր տնտեսություններ, պետությունը կազատվի գյուղատնտեսությանը 100 մլրդ ռուբլի պետական պարտքեր (վարկեր) մարելուց և տարեկան 75 մլրդ ռուբլի դոտացիա վճարելուց։

Գյուղատնտեսական մթերքների նկատմամբ համապատասխան կազմակերպությունների, քաղաքացիների պահանջների բավարարումը կարող է կատարվել ուղղակի տնտեսական կապերի, առք ու վաճառքի միջոցով։ Գները կարող են կարգավորվել փոխադարձ համաձայնությամբ։ Գյուղատնտեսական արտադրության կազմակերպման նման համակարգը առանձնապես շահեկան է մեր հանրապետության լեռնային և նախալեռնային շրջանների համար։

Նպատակահարմար է գյուղատնտեսական տեխնիկայի, պահեստամասերի, պարարտանյութերի, թունաքիմիկատների և այլ միջոցների մատակարարման ամբողջ համակարգը կազմակերպել մեծածախ առևտրի հիմունքներով։ Անհրաժեշտ է հանրապետություններում, երկրամասերում, մարզերում, շրջաններում ստեղծել լրիվ տնտհաշվարկի սկզբունքով աշխատող մատակարարման բազա-

ներ՝ իրենց մասնագիտացված կամ հանրախանութների լայն ցանցով: Դրա հետ միասին կարելի է ստեղծել լրիվ տնտհաշվարկի հիմունքներով գործող ագրոտեխնիկական ծառայությունների համակարգ, որի միջոցով տեխնիկայի սպասարկման, վերանորոգման, ագրոնոմիական, սելեկցիոն, տոհմաբուծական, տնտեսագիտական և այլ բնույթի վճարովի ծառայություններ կկատարվեն տնտեսությունների (վարձակալների) համար: Այդ ծառայությունների ամբողջ համակարգի իրացումը պետք է հիմնվի պայմանագրային սկզբունքի վրա, որտեղ հստակ նշվում են ինչպես ծառայության տեսակները և վճարման չափերը, այնպես էլ արտադրության որակական և քանակական ցուցանիշների բարելավումը: Պարտավորություններից բխող պայմանների թերակատարման կամ նախատեսված արդյունքներին չհասնելու հետևանքով առաջացած վնասների լրիվ փոխհատուցումը պարտադիր պետք է լինի երկուստեք: Նման մոտեցումը կնպաստի կողմերի պատասխանատվության բարձրացմանը, ծառայությունները բարձր մակարդակով կատարելուն, հետևապես՝ արտադրության և աշխատանքների արդյունավետության բարձրացմանը:

Գյուղատնտեսական արտադրության կազմակերպման այսպիսի կարգը մեր հանրապետությունում կնպաստի գյուղի ամբողջ աշխատունակ բնակչության զբաղվածության պրոբլեմի լուծմանն ու կյանքի (ապրուստի) նորմալ պայմանների ապահովմանը:

Գյուղատնտեսական աշխատանքների մեքենայացման և ագրոտեխնիկական նոր միջոցառումների կիրառման շնորհիվ, անշուշտ, կրճատվում է բուն գյուղատնտեսական աշխատանքներով զբաղվողների բացարձակ թիվը: Բայց նույն համամասնությամբ չի կրճատվում գյուղական բնակչության ինչպես հարաբերական, այնպես էլ բացարձակ թիվը: Այս պայմաններում առաջին պլան է մղվում գյուղական բնակչության զբաղվածության, նրա կյանքի պայմանների ապահովման խնդիրը: Տրամաբանական է, որ նման մասշտաբային հարցերը միայն դաշտավարության և անասնաբուծության աշխատանքների կազմակերպման ճանապարհով հանրապետության գյուղական բնակավայրերում հնարավոր չէ լուծել: Ուստի անհրաժեշտ է գտնել գյուղական բնակավայրերում բնակչության զբաղվածության և եկամուտների ապահովման «օժանդակ», իրենց ծավալով գուցե հիմնական, այլ բնագավառներ: Սոցիալիստական մի շարք երկրներում դա կատարվում է վերանորոգման արհեստանոցների, արդյունաբերական ձեռնարկությունների հետ կոոպերացման կարգով ոչ բարդ դետալների, մասերի արտադրության, գյուղատնտեսական մթերքների վերամշակման և իրացման, շինարարական բրիգադների կազմակերպման, սեզոնային շինարարական աշխատանքների պատվերների միջոցով: Արդյունաբերական ձեռնարկությունների մասնաճյուղերի ստեղծման հետ միասին, վերը նշված ուղիներով գյուղական բնակչության զբաղվածության ապահովումը նրանց կենսապայմանների բարելավման, կյանքի և աշխատանքի նորմալ պայմանների ստեղծման, ինչպես նաև մեր հանրապետությունում բնակեցման պրոբլեմի լուծման կարևոր ուղիներից է:

Հանրապետության արտադրական և սոցիալական ենթակառուցվածքի ձևավորման ու համալիր զարգացման գործում մեծ է տրանսպորտի և կապի դերը: Այսօր դժվար է պատկերացնել արտադրություն՝ առանց տրանսպորտի և կապի, քաղաք, բանավան, գյուղ, ինչպես նաև կուլտուրայի, գիտության, արվեստի, կրթության, կենցաղային ծառայության և սոցիալական այլ ոլորտներ՝ առանց հաղորդակցության միջոցների: Այսօր տրանսպորտը և կապը դարձել են նյութական արտադրության, հասարակության ընդհանուր առաջընթացի, նրա պահանջմունքների բավարարման կարևոր միջոցը:

Բոլոր տեսակի տրանսպորտային միջոցներով 1986 թ. բեռնաշրջանառության ծավալը 1940 թ. համեմատությամբ աճել է 23,5, այդ թվում երկաթուղային տրանսպորտինը՝ 13,2 անգամ: Հանրապետության ժողովրդական տնտեսության մասշտաբով 1986 թ. բեռնափոխադրումը հասել է 341 մլն տոննայի, իսկ եթե դրան ավելացնենք 8,5 մլն մարդ /կմ ուղևորափոխադրումը, ապա պարզ կդառնա տրանսպորտի դերը մեր կյանքում:



Մեզ մոտ կապի միջոցների զարգացման մակարդակը Միության մեջ գրավում է առաջնակարգ տեղ: Հեռուստատեսային, ռադիո, հեռախոսային, փոստային ծառայությունների ծավալով Հայաստանը դասվում է ամենազարգացած երկրների շարքը:

Հանրապետության արդյունաբերության, գյուղատնտեսության, շինարարության, տրանսպորտի, կապի, սոցիալական ոլորտի նվաճումները կապված են կապիտալ խոշոր ներդրումների հետ: 1921—1986 թթ. համադրելի գներով հանրապետության ժողովրդական տնտեսության մեջ կատարվել է 29 մլրդ 103 մլն ռուբլու կապիտալ ներդրում, որից պետական և կոոպերատիվ կազմակերպություններին հատկացվել է 26 մլրդ 983 մլն ռուբլի, կոլտնտեսություններին՝ 1.210 մլն ռուբլի: Մնացած 910 մլն-ը բաժին է ընկնում բնակչությանը:

Սովետական կարգերի մեծագույն նվաճումը հանրապետությունում գիտության զարգացումն է: Այն իսկական վերելք ապրեց 1943 թ. Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի հիմնադրումով: 1940 թ. մեզ մոտ գիտաշխատողների թիվը 1.067 էր, 1950 թ. այն հասավ 2000-ի, իսկ 1986 թ. 22.310: Ներկայումս հանրապետությունում աշխատում են մոտ 800 գիտությունների դոկտորներ և ավելի քան 8000 գիտությունների թեկնածուներ: Գիտությունների ակադեմիայի ստեղծումից հետո հանրապետությունում սկսվեց զարգացման նոր փուլ՝ գիտական պրոբլեմատիկայի ընդլայնում, հիմնարար հետազոտությունների խորացում, շրջադարձ դեպի արտադրության խնդիրների լուծումը:

ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի «Գիտական կազմակերպությունները լրիվ տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման փոխադրելու մասին» որոշումը կենսագործելու համար անհրաժեշտ են որոշակի գործնական միջոցներ, որոնցից կարելի է առանձնացնել գիտական կազմակերպությունների նյութատեխնիկական բազայի ամրապնդումը, գիտահետազոտական ինստիտուտներում նախագծային-կոնստրուկտորական օղակների, փորձնական արտադրությունների ստեղծումը: Տրամաբանական է, որ պատվիրատուի կողմից գիտական մշակումների ֆինանսավորում կարող է կատարվել միայն այն դեպքում, երբ դրա արդյունքը, որպես գիտատեխնիկական մշակում կամ արդյունաբերական նմուշ, հասցվում է կիրառության աստիճանի: Նման խնդրի լուծումն անհրաժեշտաբար թելադրում է այնպիսի հզոր գիտատեխնիկական միավորումների կազմավորում, ինչպիսիք են, ասենք, պետական արտադրական միավորումները, որոնք կընդգրկեն գիտահետազոտական (հնարավոր է նաև տարբեր ուղղության) ինստիտուտները, նախագծային, կոնստրուկտորական կազմակերպությունները՝ սկզբունքորեն նոր գիտատեխնիկական մշակումներ կատարելու, նոր տեխնիկա ստեղծելու համար: Այդպիսի նոր մշակումների, համաշխարհային պրակտիկայում համանմանը չունեցող տեխնիկայի ստեղծման բնագավառում առանձնահատուկ դերը պատկանում է ակադեմիական գիտության հովանու ներքո այդպիսի խոշոր միավորումների ստեղծմանը: Հայկական ՍՍՀ ԳԱ մի շարք ինստիտուտներ իրենց գիտական մակարդակով և կադրային պոտենցիալով այսօր կարող են հանրապետությունում բարդ գիտական և տեխնիկական խնդիրներ լուծող նման գիտատեխնիկական միավորումներ ստեղծելու հուսալի բազա լինել:

Սոցիալիզմի մեծագույն նվաճումը բնակչության բարեկեցության բարձրացումն է: 1986 թ. Հայկական ՍՍՀ-ի բնակչությունը հասավ 3,4 մլն մարդու՝ 1940 թվականի 1,3 մլն և 1913 թ. 1 մլն մարդու դիմաց: Հանրապետության արդյունաբերության բուռն զարգացման և սոցիալիստական վերակառուցման շնորհիվ փոխվեց բնակչության սոցիալական կազմը, տեղի ունեցավ ուրբանիզացիայի պրոցես և բացարձակ գերակշռող դարձավ քաղաքային բնակչությունը (1987 թ. 68,1 տոկոս՝ 1913 թ. 10,4, 1940 թ. 28,4 տոկոսի դիմաց): 1979 թ. մարդահամարի տվյալներով, բանվորների և ծառայողների տեսակարար կշիռը (ընտանիքի չաշխատող անդամների հետ միասին) կազմեց 90,3 տոկոս, որից բանվորներինը՝ 64,2 տոկոս՝ 1939 թ. 32,2 և 18,6 տոկոսի դիմաց, կոլտնտեսային գյուղացիության և կոոպերացված արհեստավորներինը՝ 9,7 տոկոս՝ 1939 թ. 64,1 տոկոսի դիմաց:

Սովետական իշխանության տարիներին, կուլտուրական մեծ վերելքի շնորհիվ, փաստորեն. նոր կազմավորվեց հանրապետության մտավորականությունը։ 1979 թ. մարդահամարի տվյալներով, հանրապետության ժողովրդական տնտեսության մեջ 440 հազար մարդ զբաղված էր գերազանցապես մտավոր աշխատանքով, իսկ 1985 թ., միանվագ հաշվառումով, հանրապետության ժողովրդական տնտեսության մեջ բարձրագույն և միջին մասնագիտական կրթությամբ զբաղվածների թիվը կազմում էր 363,5 հազար մարդ, որից 201,6 հազարը՝ բարձրագույն կրթությամբ։

Ժողովրդի բարեկեցության բարձրացման ամփոփ ցուցանիշն արտադրված ազգային եկամտի ծավալի մեծացումն է, նրա օգտագործումը կուտակման և սպառման նպատակով։ Հանրապետությանը բնորոշ են ազգային եկամտի աճի բարձր տեմպեր։ Բավական է ասել, որ 1986 թ. նրա ընդհանուր ծավալը, 1970 թ. համեմատությամբ, ավելացավ 2,9, իսկ օգտագործված մասը՝ 2,3 անգամ։ Ազգային եկամտի արտադրության և օգտագործման նման հարաբերակցությունն առողջ էկոնոմիկայի արտահայտություն է։ Նրա երեք քառորդն օգտագործվում է սպառման նպատակով։ Ամբողջությամբ վերցրած՝ ժողովրդի բարեկեցության, այդ թվում՝ բնակարանային և սոցիալ-կուլտուրական շինարարությանն է հատկացվում ազգային եկամտի չորս հինգերորդը։ Նրա մնացած մասը նախատեսվում է սոցիալիստական արտադրության ընդլայնման և համապետական այլ կարիքների բավարարման համար։ Միայն անցած հնգամյակում սպառման ու կուտակմանն ուղղված ազգային եկամտի ծավալը կազմել է 23,2 մլրդ ռուբլի (1973 թվականի համադրելի գներով)։ Հանրապետության ժողովրդական տնտեսության մեջ աշխատող բանվորների և ծառայողների միջին ամսական դրամական աշխատավարձը 1986 թ. հասավ 185 ռուբլու (1970 թ.՝ 123 ռուբլի), իսկ միջին ամսական աշխատավարձը, հասարակական սպառման ֆոնդից կատարվող վճարումների և արտոնությունների հետ միասին, կազմեց 253 ռուբլի (1970 թ.՝ 166 ռուբլի)։ Բնակչության մեկ շնչին ընկնող իրական եկամուտներն այդ ժամանակամիջոցում բարձրացան 64,5 տոկոսով, բանվորներինն ու ծառայողներինը՝ 44,4, իսկ կոլտնտեսականներինը մեկ աշխատողի հաշվով՝ 56,5 տոկոսով։

Հանրապետության բնակչության բարեկեցության բարձրացման արտահայտություններից է նաև նրա խնայողությունների աճը։ 1986 թ. խնայդրամարկղներում բնակչության ավանդների գումարը մոտենում է 3 միլիարդ ռուբլու՝ 1940 թ. 3 մլն ռուբլու, 1960 թ. 81 մլն ռուբլու, 1970 թ. 628 մլն ռուբլու դիմաց։

Ժողովրդական տնտեսության կառավարման տնտեսագիտական մեթոդներին անցնելը նոր մոտեցումներ է թելադրում ինչպես նյութական արտադրության, այնպես էլ սոցիալական ոլորտի շատ բնագավառների կազմակերպման և կառավարման բնագավառում։

Վերակառուցման առաջնահերթ խնդիրներից է սոցիալական ոլորտի առավել արագ զարգացումն ու կառավարման կատարելագործումը։ Դա տրամաբանական է, քանի որ սովետական մարդկանց կուլտուր-տեխնիկական մակարդակի մեծ փոփոխությունները մեր ժամանակներում պահանջում են ոչ միայն համապատասխան արտադրական, այլև սոցիալական ենթակառուցվածքի ստեղծում։

Այդ տեսակետից վերանայման կարիք ունեն քաղաքային բնակելի ֆոնդի ստեղծման և պահպանման սկզբունքները։ Այսօրվա բնակարանների կառուցման չափերը, ինչպես նաև որակը, ապրելու հարմարությունները շատ բանով չեն բավարարում ոչ միայն քսանմեկերորդ դարի, այլև մեր օրերի մարդու պահանջները։

Ինչպես հայտնի է, մարդկանց պահանջները բնակարանային տարածքի հարմարավետության և այլ պայմանների նկատմամբ անհատական են։ Ուրեմն և դրա լուծումն էլ պետք է լինի անհատական։ Ուստի նպատակահարմար է, որ բնակարանների կառուցումը կատարվի բնակիչների սեփական լրացուցիչ



վճարումների և անհատական պատվերների միջոցով։ Դա կարող է իրականացվել երկու ճանապարհով՝ սպառման հասարակական ֆոնդերի այդ բաժինը վարձատրության սիստեմի մեջ մտցնելու կամ պետության կողմից միջին նորմայով հատկացված միջոցների վրա սեփական գրպանի հաշվին ներդրումներ կատարելու միջոցով։

Հավանաբար, պետք է նոր ցուցանիշներով գնահատել առողջապահության զարգացման մակարդակը։ Սովորաբար առողջապահության բնագավառի հաջողությունները կապում ենք բժիշկների, հիվանդանոցներում մահճակալների, պոլիկլինիկաներում հաճախումների թվի և այլ քանակական ցուցանիշների հետ. որոնք, ըստ էության, ժամանակակից հասկացությամբ չի կարելի համարել առողջապահության համակարգի նվաճում։ Առողջապահության հիմնական ցուցանիշը պետք է լինի այդ քանակների (թվի) հասարակական պահանջի ինչպես հարաբերական, այնպես էլ բացարձակ կրճատումը։

Առողջապահության, ինչպես և հասարակական ամբողջ համակարգի խնդիրը, մարդկանց հիվանդություններից զերծ պահելն է, առողջ գործունեության ապահովումը։

Մեր հանրապետության սոցիալական ենթակառուցվածքի կարևոր օղակներից մեկը բոլոր բնակավայրերը ջրամատակարարման, կոյուղու, ջեռուցման և ապրելու համար այլ կարգավորված համակարգերի ստեղծումն է, որը մեծապես կնպաստի հանրապետության տարածքում քիչ թե շատ համաչափ բնակեցման պրոբլեմի լուծմանը։

Մեծ Հոկտեմբերի հոբելյանը սովետական մարդիկ դիմավորում են հասարակության կյանքի բոլոր ոլորտների խոր վերափոխման իրագրության պայմաններում։ Հոկտեմբերյան հեղափոխության 70-ամյակը նշելու լավագույն եղանակը մեր ամբողջ վերափոխիչ աշխատանքի ակտիվացումն է, ծագող նոր պրոբլեմների անհետաձգելի լուծումների ապահովումը, երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու՝ կուսակցության կանխագծումներն իրագործելու համար մղվող պայքարում շոշափելի հաջողությունների ձեռք բերումը։

# ՀԱՄԵՐԱՇԽՈՒԹՅԱՆ ԵՎ ԵՂԲԱՅՐՈՒԹՅԱՆ ՑՈՒՅՑ*

**Ա. ՄԻԿՈՅԱՆ**

Պետք է ասել, որ հեղափոխությունը հսկայական փոփոխություններ մտցրեց ազգային հարաբերությունների մեջ և դա առանց որևէ մեծաղղորդ ֆրազների, այլ իրականում: Այն երկրում, որը Լենինը դեռ վերջերս արդարացիորեն անվանում էր «ժողովուրդների բանտ», հաստատվում էր ազգությունների և էթնիկական խմբերի լիակատար իրավահավասարություն: Դրանով մենք առանձնապես հպարտանում էինք Անդրկովկասում: Ընդհատակի տարիները, այնուհետև խոշոր ռեգիոններից յուրաքանչյուրում հաղթական իրադարձությունների, վերականգնման ու շինարարության տարիները մերձեցրին մեզ բոլորիս: Մենք նույնիսկ մոռացել էինք մտածել, թե ով ով է: Իզուր չէ, որ Բաքվում, ընդհանուր առմամբ բնակչության կազմով ինտերնացիոնալ այդ քաղաքում, հեղափոխությունը նշվել է ամենաբազմապիսի անուններով: Նույնպիսի մթնոլորտ տիրում էր Անդրկովկասում նաև Հոկտեմբերի հաղթանակից հետո: Հենց այդ պատճառով էլ բոլոր ազգությունների բոլշևիկներն այն ժամանակ լուծեցին Անդրկովկասյան ֆեդերացիա ստեղծելու հարցը: Ֆեդերացիայի ներսում, ճիշտ է, երեք հանրապետությունների միջև սահմաններ էին անցկացվում, բայց մեզանից քչերն էին մեծ նշանակություն տալիս դրանց: Մենք լի էինք խանդավառությամբ, տեսնելով ինտերնացիոնալիզմի այդ աննախընթաց ծաղկումը, գտնելով, որ եթե դա տեղի ունեցավ այդքան արագ, ապա հետագայում գործերն է՛լ ավելի լավ կընթանան:

Դժբախտաբար, պարզվեց, որ ամեն ինչ այնքան էլ հասարակ չէ: Որոշ առումով մեր խանդավառությունը, որը միանգամայն հասկանալի էր հեղափոխական ռոմանտիկայի պայմաններում, թերևս, վաղաժամ եղավ, իսկ մենք՝ ինչ-որ չափով եղանք իդեալիստներ: Ամենից առաջ, ըստ երևույթին, ոչ բոլորը, որոնք բաժանում էին ինտերնացիոնալիզմի զգացմունքները, անկեղծ էին մինչև վերջ:

Եվ, բացի դրանից, հեղափոխական պայքարի բովով չանցած նոր մարդկանց երևան գալը նույնպես միշտ չէ, որ նպաստում էր ինտերնացիոնալիզմի պահպանմանն ու հետագա զարգացմանը: Դրա վրա առանձնապես ազդեցին 1930-ական թվականների ռեպրեսիաները, որոնք ծանր կերպով անդրադարձան նաև անդրկովկասյան բոլշևիկների վրա:

Ինչ էլ որ լինի, այն տարիներին մեզ համար դժվար էր կանխատեսել, որ կգա մի ժամանակ, երբ վերջ կունենա Անդրկովկասյան ֆեդերացիայի գոյությունը, իսկ դա, իր հերթին, այլ կերպ կդնի նախկինում աննշան թվացող տերիտորիալ հարցերը... Դժբախտաբար, Հայրենական մեծ պատերազմից հետո Ստալինի թույլ տված կամայականությունը լոկ սաստկացրեց անախորժ երևույթները ինչպես Անդրկովկասում, այնպես էլ այլ վայրերում: Իսկ առանձնապես Հյուսիսային Կովկասում, որտեղ բնակչության զգալի մասը արտաքսվեց (նույնիսկ պատերազմի տարիներին) Միջին Ասիա: ՍՄԿԿ XX համագումարից հետո միայն նրանք կարողացան վերադառնալ իրենց հայրենիքը...

Կցանկանայինք նշել նաև ահա թե ինչ. ազգությունը գործնականորեն դեր չէր խաղում մեր հեղափոխական աշխատանքում և նոր հասարակարգի հաղթանակի համար մղված պայքարում: Հայտնի է, որ Կիրովը աշխատում էր Ադրբեջանում, Օրջոնիկիձեն՝ Հյուսիսային Կովկասում և Ռուսաստանում, Մյասնիկյանը՝ Բելոռուսիայում և Մոսկվայում, Միրզոյանը՝ Միջին Ասիայում և այլն, և այլն: Օրինակներն անչափ շատ են, դրանցից շատերը ես բերում եմ հուշերում: Չկային նաև հակասեմիտիզմի դրսևորումներ՝ չէ որ շատ ու շատ հրեաներ զբաղեցնում էին ամենաբարձր պոստեր կուսակցության մեջ և պետությունում: Սա վերաբերում է նաև Սովետական Ռուսաստանի սահմաններից դուրս մնացած երկրների ներկայացուցիչներին, ինչպես, օրինակ, լեհեր Ձերժինսկին և Վորովսկին, լատիշներ Ռուձուտակը, Սմիլգան, Բերզինը և շատ ու շատ ուրիշներ:

Ելնելով Համառուսաստանյան Կենտգործկոմի նստաշրջանները Մոսկվայից դուրս գումարելու մասին եղած որոշումից, ՍՍՀՄ առաջին գումարման Կենտրոնական գործադիր կոմիտեի առաջին նստաշրջանում 1922 թվականի դեկտեմբերի 30-ին որոշում ընդունվեց մեր պետության գերագույն մարմնի հերթական նստաշրջաններից մեկը անցկացնել Թիֆլիսում՝ այն ժամանակվա Անդրկովկասյան ֆեդերացիայի մայրաքաղաքում, որը առաջին չորս միութենական հանրապետությունների թվում մտել էր Սովետական Միության կազմի մեջ:

Նման որոշումն ուներ որոշակի քաղաքական իմաստ. նկատի էր առնվում, որ ՍՍՀՄ Կենտգործկոմի նման արտագնա նստաշրջաններ կանցկացվեն չորս միութենական հանրապետություններից յուրաքանչյուրում՝ նպատակ ունենալով միութենական պետության բարձրագույն ղեկավար մարմինները է՛լ ավելի մոտեցնել միութենական հանրապետությունների բնակչությանը, օգնել նրանց մերձեցմանն ու բարեկամության ամրապնդմանը:

Իբրև այդպիսին նախատեսվեց ՍՍՀՄ Կենտգործկոմի երրորդ նստաշրջանը, որը և կայացավ Թիֆլիսում՝ 1925 թվականի մարտի սկզբին: Մոսկվայից մեկնած հատուկ գնացքը, որի մեջ էին Կենտգործկոմի անդամները (այդ թվում՝ նաև ես), սովետական կառավարության ղեկավարները, մեծ ոգևորությամբ դիմավորում էին ամբողջ ճանապարհին: Ժողովուրդը մեծ բազմություններով գալիս էր կայարանները, երկաթուղու պաստառի մոտ և ողջունում իր դեպուտատներին ու ղեկավարներին:

Առաջին մեծ կանգառը կատարվեց Բաքվում[1]: Կայարանում հավաքվել էին մեծ թվով բնակիչներ: Կայարանամերձ հրապարակում տեղի ունեցավ կայազորի զորամասերի զորահանդես, որից հետո ժողովրդի բազմության ողջույնների ուղեկցությամբ նստաշրջանի մասնակիցները գնացին Ադրբեջանի Կենտգործկոմի, Բաքվի սովետի և արհմիությունների հանրապետական խորհրդի հանդիսավոր նիստին:

Նիստը մայրենի լեզվով արտասանված կարճ հուզումնալից ճառով բացեց Ադրբեջանական հանրապետության Կենտգործկոմի նախագահ Աղամալի-օղլին: Նրանից հետո, սրտանց ողջունելով ադրբեջանական ժողովրդին, ելույթ ունեցավ համամիութենական ավագ Կալինինը, այնուհետև՝ Պետրովսկին (Ուկրաինայից), Չերվյակովը (Բելոռուսիայից), արտաքին գործերի ժողկոմ Չիչերինը, կարմիր բանակի անունից ողջունեց Բուդյոննին:

Իրադրությունը հանդիսավոր էր ու տոնական: Նիստն ավարտվեց բանաձև-դիմումի ընդունումով, որում նշվում էր ՍՍՀՄ Կենտգործկոմի առաջիկա նստաշրջանի քաղաքական հսկայական նշանակությունը Անդրկովկասի բոլոր ժողովուրդների համար:

Նույն երեկոյան էլ ճանապարհող բաքվեցիների միահամուռ ծափահարությունների և «Ուռա՜», «Կեցցե՛ սովետական կառավարությունը» բացականչությունների ուղեկցությամբ մեր գնացքը մեկնեց Վրաստան:

* Անաստաս Իվանովիչ Միկոյանի մահից հետո մնացել են մի քանի չհրապարակված ձեռագրեր: Դրանցից մեկը՝ հուշերի երրորդ գիրքը (առաջին երկու գրքերը լույս են տեսել Մոսկվայում 1970-ական թվականների սկզբին) ընդգրկում է բավական երկար ժամանակաշրջան՝ 1924-ից մինչև 1930-ական թվականների վերջը: Ընթերցողների ուշադրությանն է ներկայացվում այդ աշխատության գլուխներից մեկը:

Հրապարակումը Ս. Ա. ՄԻԿՈՅԱՆԻ:

1 Այն ժամանակ Մոսկվայից Թբիլիսի տանող միակ ճանապարհն ընկած էր Բաքվի վրայով, քանի որ Սև ծովի ափերով երկաթուղի դեռ չկար:

Թիֆլիսի կայարանում նստաշրջանի մասնակիցներին հյուրընկալորեն դիմավորեցին տասնյակ հազարավոր բնակիչներ: Դարձյալ ջերմ ողջույնի խոսքեր, ձեռքսեղմումներ, հին բարեկամների ուրախալի հանդիպումներ, գրկախառնություններ, բացականչություններ, ծաղիկներ, երաժշտություն: Հենց տեղում էլ՝ կայարանում հավաքվեց երկաթուղայինների մի մեծ խումբ: Նրանց ողջունեց Կալինինը:

Հրապարակում ժամանածների առջևից անցան զորքերը, իսկ այնուհետև սկսվեց աշխատավորների և սովորող երիտասարդության մասսայական, գունագեղ ցույցը: Անցնում էր շրջանը շրջանի հետևից, հյուրերին ողջունում էին վրացերեն, ադրբեջաներեն, հայերեն և ռուսերեն: Տպավորությունը հիրավի հսկայական էր:

Երեկոյան օպերային թատրոնի դահլիճում կայացավ Թիֆլիսի քաղսովետի հանդիսավոր նիստը՝ հանրապետության մայրաքաղաքի հասարակայնության մասնակցությամբ: Այն բացեց լենինյան կուսակցության վետերան, Անդրկովկասյան Ֆեդերացիայի Կենտգործկոմի ղեկավար, սպիտակահեր Միխա Ցխակայան: Նա խոսեց սովետական պետության հետագա ամրապնդման համար սովետական ժողովուրդների մեծ բարեկամության ունեցած նշանակության մասին:

Ինչպես միշտ, ջերմ ու կրքոտ ելույթ ունեցավ Սերգո Օրջոնիկիձեն: Ամբողջ դահլիճի միահամուռ ծափահարությունների ուղեկցությամբ նա հայտարարեց, որ մեր օրերում Անդրկովկասի աշխատավորները վերջնականապես հասկացան, որ իրենք կընթանան ո՛չ վրաց մենշևիկների, ո՛չ էլ արևմտաեվրոպական բուրժուազիայի հետ, որ իրենց միակ ճանապարհը ռուս բանվորների և գյուղացիների հետ է, բոլշևիկյան կուսակցության հետ, Լենինի հետ:

Անդրկովկասի ժողովուրդների անունից նստաշրջանը ողջունեց Ադամալիօղլին, վրաց ժողովրդի անունից՝ Թոդրիան, Հայաստանից՝ Լուկաշինը, ուկրաինական ժողովրդի անունից՝ Պետրովսկին, բելոռուսների անունից՝ Չերվյակովը: Բոլոր ելույթ ունեցողներն իրենց հանրապետությունների և ժողովուրդների կյանքից վերցրած կոնկրետ օրինակներով հաստատում էին կոմունիստական կուսակցության և սովետական կառավարության ազգային քաղաքականության ճշտությունը, շեշտելով, որ Սովետական Միության ժողովուրդների միասնության ու բարեկամության մեջ է միայն նրա հաջողությունների գրավականը: Բոլորն էլ մեծ հավանությամբ արտահայտվեցին ՍՍՀՄ Կենտգործկոմի երրորդ նստաշրջանը Անդրկովկասում անցկացնելու որոշման մասին՝ դրանում տեսնելով ժողովուրդների եղբայրական մերձեցման հարցում կուսակցության հոգատարության դրսևորումներից ևս մեկը:

Մարտի 3-ին օպերային թատրոնի դահլիճում նստաշրջանն սկսեց իր աշխատանքը: Քաղաքի կուսակցական, սովետական, արհմիութենական և կոմերիտական աշխատողների ակտիվից բացի նրա բոլոր նիստերին ներկա էին Թիֆլիսի շատ բանվորներ, ինչպես նաև մնացած անդրկովկասյան հանրապետությունների բանվորների և գյուղացիների պատվիրակություններ: Նստաշրջանի քննարկմանը դրված զեկուցումները մեր ներքին և արտաքին քաղաքականության մասին բոլորին էլ շատ էր հետաքրքրում: Բոլոր օրերին նիստերի դահլիճը լեփ-լեցուն էր լինում:

Կալինինը, բացելով նստաշրջանը, խոսեց կուսակցության ու մեծ Լենինի կողմից մեր երկրում ազգային հարցի ճիշտ լուծմանը տված հսկայական նշանակության մասին: ՍՍՀՄ-ի կազմավորմամբ, ամրապնդելով մեր բազմազգ պետության ընդհանուր միութենական հզորությունը, միութենական կառավարությունը Սովետական Միության կազմի մեջ մտած բոլոր հանրապետություններին առավելագույն նախաձեռնություն, ինքնուրույնություն և անհրաժեշտ պայմաններ է տրամադրում նյութական բարեկեցությունը բարելավելու և յուրաքանչյուր ժողովրդի ազգային մշակույթը զարգացնելու համար:

Մենք անում ենք հնարավոր ամեն ինչ՝ այդ միությունն ամրապնդելու համար, շարունակեց Կալինինը: Ահա և հիմա, որպես ժողովրդի և ամենից առաջ գյուղացիության կյանքի մասին կուսակցության ու կառավարության այդպիսի հոգատարության վկայություն, մենք Կենտգործկոմի նստաշրջանի հաստատմանն ենք ներկայացնում նոր օրինագիծ գյուղատնտեսական հարկի մասին, որը կլինի առնվազն $^1/_4$-ով ավելի պակաս նախորդ տարվա հարկից (տե՛ս



Стенографический отчет 3 сессии ЦИК СССР. М., 1925, стр. 7): Այդ հայտարարությունն արժանացավ նստաշրջանում բոլոր ներկա գտնվողների ջերմ հավանությանը:

Միութենական կառավարության գործունեության մասին զեկուցումից հետո մտքերի փոխանակություն սկսվեց: Ես առանձնապես հիշում եմ արտաքին գործերի ժողկոմ Գեորգի Վասիլևիչ Չիչերինի վառ ճառը. նա հանգամանորեն պատմեց միջազգային դրության և սովետական պետության արտաքին քաղաքականության մասին: Չիչերինը մեզ այնպես էր հափշտակել իր բովանդակալից, կոնկրետ փաստերով հագեցված ելույթով, որ մենք անկեղծորեն վշտացանք, երբ այդ ելույթն ավարտվեց: Նա կարծես մեզ համար բացեց գիտելիքների ու ինֆորմացիայի նոր մեծ աղբյուր, որոնց կարիքն այն ժամանակ մենք բոլորս էլ զգում էինք:

Կենտգործկոմի մյուս անդամների թվում ես ևս ելույթ ունեցա այդ նստաշրջանում: Հենվելով Հյուսիսային Կովկասում ապրող ժողովուրդների կյանքից վերցրած կոնկրետ փաստերի վրա, հատկապես ցարիզմի ժամանակ ամենից ավելի ճնշված լեռնային ժողովուրդների օրինակով, նստաշրջանի մասնակիցներին պատմեցի, թե սովետական իշխանությունը ինչպիսի մեծ հնարավորություններ է տվել այդ բոլոր ժողովուրդներին տնտեսական ու կուլտուրական տեսակետից արագ առաջընթացի համար և թե գործնականորեն այդ ուղղությամբ ինչ է արդեն արվել մեր երկրամասում: Շոշափեցի նաև կազակության պրոբլեմը: Հաղորդեցի քաղաքական այն մեծ նշանակության մասին, որ ստացել էր վտարանդիությունից մի քանի հազար կազակների վերադարձի փաստը: Պատմեցի նաև այն օգնության մասին, որ միութենական կառավարությունը ցույց էր տվել մեր երկրամասի գյուղացիությանը մի շարք շրջանների վատ բերքի կապակցությամբ անցյալ աշնանը և այս գարնանը նրանց հատկացնելով ավելի քան 6 միլիոն փութ սերմացու:

Կատարելով հողագործների պատվիրանը, ես նստաշրջանում դրեցի մեր վայրերի համար հրատապ գյուղական ճանապարհների հարցը: Խճուղիները վատ վիճակում էին: Նորերը չէին կառուցվում, իսկ հները չէին վերականգնվում: Դրա համար միջոցները չէին բավականացնում: Մինչդեռ գյուղացիական տնտեսության ապրանքայնության աճի հետ ավելի ու ավելի ուժեղ էր զգացվում ճանապարհների կարիքը կենդանաքաշ տրանսպորտի համար: Ճանապարհազրկությունը մեծ խոչընդոտ էր գյուղացիական տնտեսության եկամտաբերության հետագա ավելացման համար: Այդ բանը սուր կերպով զգում են իրենք՝ գյուղացիները, որոնք ժողովներում հայտարարում են. «Մենք պատրաստ ենք աշխատելու ճանապարհների շինարարության վրա, տվեք միայն նյութ և մասնագետներ»:

Վերջում ես բարձրացրի Վոլգա-Դոնի ջրանցքի շինարարության հարցը, որի կապակցությամբ նախկինում ես արդեն դիմել էի միութենական կառավարությանը: Այդ ջրանցքը, մեր մտահղացմամբ, պետք է Վոլգան կապեր Կովկասի և Պովոլժիեի հետ և նրանց ելք տար դեպի Կասպից, Ազովի և Սև ծովերը, ինչը մեծ նշանակություն կունենար մեր երկրամասի համար:

Այդ ջրանցքը, ինչպես հայտնի է, կառուցվեց զգալիորեն ավելի ուշ, նավագնացությունն այդ ջրանցքով բացվեց 1952 թվականի հուլիսին: Եվ, իհարկե, նրա նշանակությունը երկրամասի շրջանակներից շատ ավելի դուրս եկավ:

Նստաշրջանը քննարկեց Անդրկովկասի կառավարության հաշվետվությունը և ընդունեց որոշում, որը մեծ դեր խաղաց անդրկովկասյան հանրապետությունների հետագա սոցիալ-տնտեսական զարգացման գործում:

Նստաշրջանում լսվեց երկու զեկուցում ևս՝ 1924—25 տնտեսական տարվա պետական բյուջեի մասին (զեկուցողներ՝ Բրյուխանով և Կույբիշև) և նոր գյուղատնտեսական հարկի մասին (զեկուցող՝ Բրյուխանով): Կառավարության ներկայացրած և երրորդ նստաշրջանի ընդունած բյուջեն առաջինն էր սովետական իշխանության գոյության պատմության ընթացքում. բյուջեում լրիվ բացառված էր էմիսիան՝ որպես եկամտային մասի աղբյուր. դա հնարավոր եղավ մեր էկոնոմիկայի աճի և կայուն վալյուտայի անցման շնորհիվ:

ՍՍՀՄ Կենտգործկոմի երրորդ նստաշրջանն իր աշխատանքն ավարտեց 1925 թվականի մարտի 7-ին: Նույն օրը ներ, երեկոյան, խմբերի բաժանվելով, սովետական կառավարության ղեկավարները և Կենտգործկոմի մի քանի

մանակ մեզ բոլորիս զարմացրել էր հատկապես, թե հայ ժողովուրդը ինչպիսի համառությամբ ու աշխատասիրությամբ էր վերականգնում իր հարազատ քաղաքներն ու գյուղերը:

Լենինականում կառուցվում էր նոր տեքստիլ ֆաբրիկա: Դրա միհարկանի մասնաշենքերն արդեն կառուցվել էին, կատարվում էր հայ ժողովրդին Իվանովո-Վոզնեսենսկի տեքստիլագործների կողմից որպես նվեր ուղարկված սարքավորումների տեղադրումը:

Իվանովցիները օգնում էին լենինականցիներին կատարելու մոնտաժային բարդ աշխատանքները: Հետագայում Լենինականի տեքստիլ ֆաբրիկան՝ Սովետական Հայաստանի տեքստիլ արդյունաբերության առաջնեկը, աճեց ու դարձավ մի հսկայական տեքստիլ կոմբինատ:

Հուզմունքը պատեց ինձ, երբ մոտեցանք Էջմիածնին՝ Հայաստանի ոչ մեծ, բայց հին մշակութային կենտրոններից մեկին: Ինձ համար այդ քաղաքն առանձնապես թանկ է, քանի որ նրա հետ է կապված իմ պատանեկությունը: Այստեղ, նշանավոր մայր տաճարի՝ լուսավորչական հավատի բոլոր հայերի (իսկ դրանք մեծամասնություն են կազմում մխիթարյան կաթոլիկների համեմատությամբ) կրոնական կենտրոնի կողքին, թեև ոչ երկար ժամանակ, ես սովորել եմ՝ աշխատելով արդեն բոլշևիկյան ընդհատակում: Ի դեպ, շատ տարիներ հետո, Երևանում հանդիպում ունենալով ամենայն հայոց կաթողիկոս Վազգեն Առաջինի, այդ չափազանց կրթված, անկեղծ ու իմաստուն մարդու հետ, ես ասացի նրան. «Չէ՞ որ ես ինչ-որ մի խոտանի պես բան եմ արտադրության մեջ: Սովորել եմ հոգևոր սեմինարիայում, այնուհետև ձեր ճեմարանում, բայց դարձել եմ բոլշևիկ...»: Վազգեն Առաջինը ժպտաց և ասաց. «Տա աստված, որ մեր ուսումնական հաստատությունները այսուհետ ևս տան այդպիսի «խոտան»: Դա կլիներ մեր ժողովրդի, մեր հայրենիքի շահերի օգտին»:

Կայարանում, ինչպես և ամենուրեք, մեզ ողջունում էին մարդկանց բազմությունները: Նրանց մեջ էր Հայաստանի Կենտգործկոմի նախագահ Համբարձումյանը, ժողկոմխորհի նախագահի տեղակալ Մռավյանը և ուրիշներ: Ես ուրախ էի, որ նորից հանդիպեցի Աշոտ Հովհաննիսյանին (որը, ինչպես ասացի արդեն, գլխավորում էր այն ժամանակ Հայաստանի կոմկուսի Կենտկոմը), ինչպես նաև իմ դպրոցական ընկեր Երզնկյանին:

Էջմիածնում մենք այցելեցինք մատենադարան (ձեռագրատուն), որտեղ կային հնագույն հայկական ձեռագրեր (այժմ դրանց հիմնական մասը կենտրոնացված է Երևանում, հատուկ կառուցված գրապահոցում, որի բազայի վրա ստեղծվել է գիտական հիմնարկություն): Եղանք պատկերասրահում, որտեղ զմայլվում էինք Այվազովսկու «Աշխարհի արարչությունը» նկարով (ի դեպ, հյուրերից շատերն առաջին անգամ այն ժամանակ իմացան, որ Այվազովսկին հայ է): Ծանոթացումը Հայաստանի մշակութային հին կենտրոններին հրակայական տպավորություն գործեց բոլորի վրա:

Մեր ուղևորությունը հանրապետությունում չէր սահմանափակվում, իհարկե, միայն բարեկամական հանդիպումներով, մասսայական միտինգներով, ողջույնի ճառերով կամ դրանց պատմական տեսարժան վայրերին ծանոթանալով:

Այս կամ այն քաղաքը կատարած մեր այցելությունը մենք օգտագործում էինք տեղական ղեկավարների, կուսակցական և սովետական ակտիվի հետ խիստ գործարար հանդիպումների համար: Զրույցների ընթացքում նշվում էին կոնկրետ լուծումներ տնտեսական մի շարք հարցերի վերաբերյալ:

Մեր ուղևորության եզրափակիչ կետը եղավ Երևան քաղաքը՝ Սովետական Հայաստանի մայրաքաղաքը: Իհարկե, Երևանն այն ժամանակ մի փոքր և ոչ այնքան տպավորիչ քաղաք էր: Չէ՞ որ հեղափոխությունից առաջ մեծահարուստ հայերը գերադասում էին ապրել ու տներ կառուցել Թիֆլիսում և Բաքվում: Սակայն տաղանդավոր ճարտարապետ Թամանյանը և ուրիշներ արդեն աշխատում էին քաղաքի գլխավոր հատակագծի, քաղաքի համար առավել անհրաժեշտ առանձին շենքերի նախագծերի ու շինարարության վրա:

Գրեթե յուրաքանչյուր տան ճակատին կախված էին դրոշակներ, Լենինի և սովետական կառավարության ղեկավարների նկարներ, տրանսպարանտներ՝ «Բարի գալուստ, թանկագին բարեկամներ» հյուրընկալ մակագրություններով:



Այնքան շատ ժողովուրդ էր հավաքվել, որ փողոցներում ու հրապարակներում տեղ չէր մնացել, և երիտասարդները բարձրացել էին պատշգամբներն ու նույնիսկ տների կտուրները: Միտինգը կազմակերպվել էր Լենինի կենտրոնական հրապարակում: Կառավարության անդամների և ՍՍՀՄ Կենտգործկոմի անդամների հայտնվելը տրիբունայի վրա տասնյակ հազարավոր մարդիկ դիմավորեցին բուռն ու երկարատև օվացիայով: Միտինգը բացեց Սաքո Համբարձումյանը: Ելույթ ունեցան Չիչերինը, Բուդյոննին և ուրիշներ: Այն ժամանակ լույս էր տեսնում «Խորհրդային Հայաստան» հանրապետական թերթը, որը և հրապարակեց նրանց ճառերը: Միտինգից հետո կայացավ զորահանդես և աշխատավորների ցույց: Մենք հաճույքով էինք դիտում պատանիների ու աղջիկների արևավառ, առնական ու ուրախ դեմքերը. իսկ երիտասարդները հատկապես շատ-շատ էին ցուցարարների շարքերում:

Զորահանդեսից հետո Բուդյոննին, ՍՍՀՄ ռազմահեղափոխական խորհրդի անդամներ Զատոնսկին և Եգորովը, իսկ նրանց հետ նաև ես, եղանք կարմիր բանակի կովկասյան հայկական կարմրադրոշ դիվիզիայի զորանոցներում: Այնտեղ ներկա եղանք ուսումնական պարապմունքներին, զրույցներ ունեցանք կարմիրբանակայինների և հրամանատարների հետ: Դիվիզիան շատ լավ տպավորություն գործեց կազմակերպվածությամբ և ռազմական վարժվածությամբ:

Այնուհետև մեզ հրավիրեցին հիդրոէլեկտրակայանի հիմնադրմանը: Մեզ ուղեկցող Լուկաշինը ծանոթացրեց հանրապետության ապագա էներգետիկ բազային, ցույց տվեց կառուցված ջրանցքը, մեզ ներկայացրեց ապագա ՀԷԿ-ի տեխնիկական անձնակազմը: ՀԷԿ-ի հանդիսավոր հիմնադրումից առաջ ընթերցվեց պղնձե սալիկի վրա փորագրված տեքստը: Այնտեղ ասված էր. «Իրականացնելով Վ. Ի. Լենինի պատգամը՝ «Կոմունիզմը՝ սովետական իշխանությունն է պլյուս ամբողջ երկրի էլեկտրիֆիկացումը», Հայկական ՍՍՀ ժողկոմխորհի նախագահ Սրապիոն Լուկաշինի նախաձեռնությամբ 1923 թվականի մայիսի 31-ին որոշվեց Երևանում կառուցել հիդրոէլեկտրակայան 5600 ձիաուժ հզորությամբ: Ջրանցքի շինարարության աշխատանքներն սկսվեցին 1923 թվականի հոկտեմբերի 1-ին և ավարտվեցին 1924 թվականի հուլիսի 20-ին: Այսօր, 1925 թվականի մարտի 9-ին, դրված է Հայկական ՍՍՀ-ի էլեկտրիֆիկացման սկիզբը, որը պետք է խթան դառնա նրա կուլտուրական և տնտեսական զարգացման համար»:

Այդ սալիկը թաղվեց ապագա ՀԷԿ-ի առաջին քարերի հետ:

Երեկոյան պետական թատրոնի դահլիճում կայացավ քաղաքային սովետի և մայրաքաղաքի հասարակայնության հանդիսավոր նիստը:

Շատ կարճ ժամանակով Նախիջևանում գտնվելուց հետո մեր խումբը նորից մեկնեց Վրաստանի մայրաքաղաք: Եվ դարձյալ ամբողջ ճանապարհին, չնայած վատ եղանակին, գնացքը դիմավորում էին մարդկանց բազմություններ: Կայացան միտինգներ և հանդիպումներ:

Մարտի 11-ի առավոտյան ժամանեցինք Թիֆլիս:

Մենք այստեղ պատմեցինք, թե ինչ տպավորություն գործեց մեզ վրա Սովետական Հայաստանը: Տնտեսական ու կուլտուրական վերածննդի նույնպիսի պատկեր տեսան նաև այդ օրերին Վրաստանի և Ադրբեջանի քաղաքներն ու գյուղերն այցելած Կենտգործկոմի անդամները: Մասնավորապես, ՍՍՀՄ Կենտգործկոմի մի խումբ անդամներ Կալինինի գլխավորությամբ յոթնօրյա ուղևորություն կատարեցին Վրաստանում, որի ժամանակ այցելեցին վրացական 16 քաղաք և գյուղ:

Բոլորը համոզվեցին, որ Անդրկովկասում անցկացված ՍՍՀՄ Կենտգործկոմի նստաշրջանը, միութենական ղեկավարների անձնական շփումը կուսակցական և սովետական աշխատողների լայն շրջանի հետ ազգային հանրապետություններում, ինչպես նաև անմիջական հանդիպումները ղանազան ազգությունների մարդկանց հետ՝ այս ամենը դրական դեր խաղաց այդ հանրապետությունների հետագա տնտեսական ու կուլտուրական վերելքի հետ կապված հարցերի լուծման գործում, էլ ավելի ամրապնդեց սովետական հանրապետությունների ժողովուրդների եղբայրական միասնությունը:

Անդրկովկասյան հանրապետությունների՝ Թիֆլիսում գտնված ղեկավարների հետ տեղի ունեցած կարճատև գործարար հանդիպումից հետո նստաշրջանի մասնակիցները նորից մեկնեցին Մոսկվա, իսկ ես՝ Ռոստով:

Յավոք, այդ ուղևորությունից անմիջապես հետո մենք տխուր լուր իմացանք. Թիֆլիսից ոչ հեռու ավիացիոն աղետի ժամանակ զոհվեցին Անդրկովկասյան երկրկոմի քարտուղար Ալեքսանդր Ֆյոդորովիչ Մյասնիկյանը, Անդրկովկասյան ֆեդերացիայի կապի ժողկոմ, երկրամասային կուսակցական վերահսկիչ հանձնաժողովի նախագահի տեղակալ, երկար ժամանակ համառուսաստանյան արտակարգ հանձնաժողովում աշխատած Գևորգ Աթարբեկյանը և երկրամասային պետական քաղաքական վարչության նախագահ Սողոմոն Մոգիլևսկին։ Նստաշրջանից անմիջապես հետո, ավարտելով իրենց գործերը, նրանք 1925 թվականի մարտին նստեցին «Յունկերս» ինքնաթիռը, որպեսզի մեկնեն Սուխումի՝ Աբխազական Ինքնավար Հանրապետության սովետների համագումարին մասնակցելու համար։ Ճանապարհին, մինչև հիմա էլ անհայտ մնացած պատճառներով, ինքնաթիռը հանկարծ բռնկվում է և, բոցերի մեջ ընկնում գետնին։ Այդպես կտրվեց հին լենինյան գվարդիայի երեք հիանալի կոմունիստների կյանքի թելը։ Այդ կորուստը խոր արձագանք գտավ սովետական մարդկանց սրտերում։

Այնուհետև ենթադրություններ եղան, թե այդ աղետը պատահական չէր, ի նկատի ունեին այն ժամանակ Անդրկովկասի անվտանգության մարմիններում աշխատող Բաղիրովի և Բերիայի չարագուշակ դերը։ Սակայն այդ կապակցությամբ ճշգրիտ տվյալներ այդպես էլ չհայտնաբերվեցին...

«ՌԿ(բ)Կ Կենտկոմը ձեզ և ամբողջ կուսակցության հետ բաժանում է ողբերգականորեն զոհված, կոմունիզմի համար պայքարած հին փորձված մարտիկների կորստյան վիշտը» («Правда», 1925 թվականի մարտի 24),— ասված էր Մոսկվայից Անդրկովկասի բոլշևիկներին հասցեագրված ցավակցական հեռագրում։

«Ընկերներ Մյասնիկովի, Աթարբեկյանի և Մոգիլևսկու կորուստը,— այդ օրերին գրել է «Правда» թերթը,— երկրորդ (Շահումյանի, Ջափարիձեի և Բաքվի մյուս քսանչորս կոմունարների գնդակահարությունից հետո) նշանակալի հարվածն է Անդրկովկասում մեր կուսակցության համար» («Правда», 1925 թվականի մարտի 25)։

Ես լավ էի ճանաչում Ալյոշա Մյասնիկյանին։ Հիշում եմ նրա քաղաքականապես շատ հստակ և սուր հոդվածները, որոնք հրապարակվում էին դեռևս 1917 թվականին Բաքվի «Սոցիալ-դեմոկրատ» թերթում, որը մենք խմբագրում էինք Ստեփան Շահումյանի հետ միասին։ Հայերեն հրապարակված այդ հոդվածները կրում էին Մյասնիկյանի կեղծանուններից մեկը՝ Ալ. Մարտունի։

Հիշում եմ, ինչպես սովետների համառուսաստանյան XI համագումարում, որի օրերին մահացավ Լենինը, Ալյոշան ման էր գալիս շվարած, արցունքներով լի աչքերով։

Լենինի մասին իր հուշերում, որոնք հրապարակվեցին Իլյիչի մահից հետո շատ չանցած, Մյասնիկյանը գրում էր. «Ես անսահման երջանիկ եմ և մինչև մահ գերեզման պիտի պարծենամ ու դրա հետ մեկտեղ զարմանամ այն բանի համար, որ եղել եմ այդ հսկայի, հանճարի ու մեր ժամանակի մեծագույն լեռան ժամանակակիցը, անձամբ ծանոթ եմ եղել, խոսել նրա հետ, սեղմել նրա ձեռքը, նրա հետ քայլել ու ճանապարհորդել, եղել եմ նրա հետևորդն ու կրտսեր աշակերտը» («Заря востока», 1924 թվականի ապրիլի 23)։

Մյասնիկյանը (Մյասնիկովը) բոլշևիկյան ընդհատակում աշխատել է երկրի տարբեր վայրերում։ Հոկտեմբերի հաղթանակից հետո նա գլխավորել է բոլշևիկների կազմակերպությունները Բելոռուսիայում, այնուհետև եղել է կուսակցության Մոսկվայի քաղկոմի քարտուղար։ Ալյոշա Մյասնիկյանի պայծառ կերպարը ընդմիշտ կմնա բոլոր նրանց հիշողության մեջ, ովքեր ճանաչել են նրան։ Իսկ նրա կյանքը, նրա գործերը նոր սերունդների համար կծառայեն որպես ժողովրդին ու կոմունիզմի գործին հավատարմորեն ու անձնվիրաբար ծառայելու օրինակ։

---

## Հոգևոր բարեկամության կապեր

# ՀՈԿՏԵՄԲԵՐԸ ԵՎ ՀԱՅ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

**ՀՐԱՆՈՒՇ ԴԱՐԲԻՆՅԱՆ**
**Բանասիրական գիտությունների թեկնածու**

ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅՈՒՆԸ մեր դարի ամենանշանակալի իրադարձությունն է, որի 70-ամյա տարելիցը մեծ հանդիսավորությամբ նշեց մոլորակի ողջ առաջադեմ մարդկությունը։ Գնալով ավելի ու ավելի է մեծանում Հոկտեմբերի վարակիչ ուժը, ավելի ընդգծվում հեղափոխության իդեալների համամարդկային նշանակությունը։ Նրա երթն անկասելի է դարերի մեջ, նա մարդկության խավար ուղին լուսավորած երեկն է, այսօրն ու ապագան։

Մեծ Հոկտեմբերը գրականությունը հարստացրեց նոր թեմատիկայով, գեղարվեստական արտահայտչականության նոր միջոցներով և գաղափարական հագեցվածություն հաղորդեց նրան։ Հոկտեմբերն օգնեց մեր գրողների աշխարհհայացքի ընդլայնման ու սոցիալական հրատակ դիրքորոշմանը, նրանց տոգորեց մարքսիստական հզոր աշխարհհայացքով, որը հնարավորություն է ընձեռում երևույթներն ու իրադարձությունները լուսաբանել ամբողջ խորքով, ցուցադրել լինելիության ընթացքն ու զարգացման հեռանկարը, նորովի մեկնաբանել մարդու և հասարակության պրոբլեմը։ Դեռևս հեղափոխության թարմ տպավորությունների տակ Վլ. Մայակովսկին գրել է.

Երբ
Հոկտեմբերը
խուժեց փողոցները
արյունով,
Փոթորիկներով հրանոթների,
Գիտեմ,
Մոսկվայում էր լուծվում ճակատագիրը
Ե՛վ Կիևների,
Ե՛վ Թիֆլիսների։

(Վ. Վ. Մայակովսկի, Ընտիր երկեր, Ե. 1950, հ. 1, էջ 155)։

Պատմականորեն ճշմարիտ այս թեզը միաժամանակ հեղափոխության թեմատիկ արծարծումների որոշակի տեսակետ էր առաջադրում սովետական բազմազգ գրականությանը։ Հեղափոխությամբ ազատագրված ամեն մի ժողովուրդ իր հայացքով, իր ժողովրդի պատմական բախտի ու ճակատագրի պրիզմայի միջով էր ընկալում ազատարար Հոկտեմբերի պատմական նշանակությունը։ Վահան Տերյանն էլ Մայակովսկու նման ընդգծում էր հեղափոխության գլոբալ նշանակությունը՝ «Նոր օր է բացվում ազգերի համար...»։ Հայ գրականության մեջ սա հեղափոխության արտացոլման կարևոր ասպեկտներից մեկն է, որը կոնկրետ ստեղծագործությունների գեղարվեստական համակարգում ամենաբազմազան լուծումներ է ստանում։

Բազմադարյան հայ գրականությունը մեծ Հոկտեմբերին է հասել՝ որպես ազատագրական անզիջում պայքարի, հերոսական մաքառման, անձնուրաց հայրենասիրության, հումանիստական, լավատեսական վեհ զգացմունքների գեղարվեստական արտահայտություն։ Այն դարերի թոհուբոհի միջով բերել ու նոր ժամանակներին է ավանդել ստեղծարար աշխատանքի, արդար վաստակի հմայքը, և խաղաղության, իրավահավասարության, ժողովուրդների բարեկամության երազանքը։ Իր այս առանձնահատկություններով մեր գրականությունը հարազատ էր հեղափոխական հուզումներով լի ժամանակների ոգուն և նրա հաղթանակի մեջ էր տեսնում ժողովրդի ազատագրության վաղնջական երազանքի իրականացումը։ Դրանով պիտի բացատրել, որ հեղափոխության թեման մեր գրականության գաղափարական-գեղարվեստական համակարգի մեջ մտավ միանգամից՝ որպես նրա զարգացման ընթացքի բնականոն շարունակություն, օրգանապես ձուլվեց թեմատիկ հինավուրց շերտերին։ Բայց դա միաժամանակ գեղարվեստական մտածողության նոր որակ էր, որն առաջադրում էր գրականության գաղափարական նպատակամիտվածության, հասարակական կյանքում նրա ունեցած դերի, գրական նոր հերոսի տիպի ու երկի կառուցվածքի, ոճի և արտահայտչամիջոցների ինքնատիպ լուծումներ։

XX դարի առաջին տասնամյակները նշանավորվեցին ռուսական պրոլետարիատի քաղաքական ակտիվությամբ, երբ ամբողջ երկիրը թևակոխեց ռուսական երեք հեղափոխությունների ժամանակաշրջանը։ Մ. Գորկու «Մրրկահավը» կանխանշում էր մոտալուտ փոթորիկները, դարավոր նինջի ու ստրկության մատնված մարդկանց հայացքի դեմ բացավառում գալիք ազատ կյանքի արշալույսները, ոգեշնչում, հաղթանակի հավատ ներարկում մեծ պայքարի մարդկանց։ «Մրրկահավը», որ միանգամից դարձավ հեղափոխական պայքարի խորհրդանիշ, հուժկու թևաբախումներով հայտնվեց նաև ազգային գրականությունների երկնակամարում։ Գրականությունը դարձավ հասունացող հեղափոխական շարժումների ոչ միայն տարեգիրը, այլև մասնակիցն ու ոգեշնչողը։

1905—1907 թթ. հեղափոխությանը նախորդող տասնամյակի հայ գրականությանը բնորոշ են հեղափոխական պայքարի այլաբանական արծարծումները։ Ցարական իրականության դեմ աճող ժողովրդական դժգոհությունը սպառնալի չափեր էր ընդունում՝ իր հետ բերելով գիտակցական, կազմակերպված պայքարի գաղափարը։ Սակայն հասարակական կյանքում կատարվող այս տեղաշարժերի մասին գրականությունը հասկանալի պատճառներով չէր կարող

արագ ու ավելի լայն, որչափ ավելի հետևողական կլինի դեմոկրատիզմը...» (ԵԼԺ, հ. 23, էջ 520)։ Վլադիմիր Իլյիչի այս հետևությունը փայլուն կերպով հաստատվեց սովետների երկրի լեզվական կյանքի փորձով։ Լինելով երկրի բնակչության մեծամասնության ազգային լեզու՝ ռուսաց լեզուն դարձավ փոխադարձ կապի ու համախմբման կամովին ընտրված միջոց ազգերի բազմակողմանի համագործակցության, տնտեսական, քաղաքական և կուլտուրական զարգացման պրոցեսում։

Մեր երկրի ժողովուրդները, համախմբվելով անխախտ միության մեջ, կուսակցության ղեկավարությամբ կառուցում են նոր հասարակություն։ Այս պարագայում իր ողջ ուժով դրսևորվում է ռուսաց լեզվի՝ որպես տարբեր ազգությունների մարդկանց փոխադարձ հաղորդակցման լեզվի, վեհ առաքելությունը։ Այս կապակցությամբ տեղին է հիշել Սիլվա Կապուտիկյանի խոսքերը. «Սովետական մարդկանց համար ռուսաց լեզուն մեր ժողովուրդների, մեր մշակույթների մեծ կապավորն է։ Այն հուսալիորեն ցեմենտում է սոցիալիստական ազգերի ընկերակցության քաղաքական, տնտեսական և հոգևոր միասնությունը» («Правда», 1987 թ. մայիսի 7)։

ՍՍՀՄ-ը բազմազգ և բազմալեզու պետություն է, և նրա բոլոր ժողովուրդները գտնվում են տնտեսական ու մշակութային սերտ կապերի մեջ։ Համատեղ կյանքի պրոցեսում նրանք անհրաժեշտ ինֆորմացիա են փոխանակում միմյանց հետ, իրար հաղորդում առաջավոր փորձն ու գիտելիքները, արտադրության, գիտության, տեխնիկայի ու մշակույթի նվաճումները։ Առանց ռուսաց լեզվի անհնար են հանրապետությունների արդյունավետ համագործակցությունը և հասարակական առաջադիմությունը։ Նրանց տնտեսական կյանքի կազմակերպման գործում ռուսաց լեզուն հանդես է գալիս որպես այլալեզու կոլեկտիվների հաղորդակցման միջոց՝ ապահովելով փոխըմբռնումն ու դրանով իսկ ամեն նորի ու առաջադիմականի արմատավորումը էկոնոմիկայի ամենատարբեր ճյուղերում։

Հենց այդ պատճառով էլ երկրում բազմակողմանի տնտեսական կապերի զարգացումը, ինչպես նաև մշակույթի նվաճումների փոխանակման պրոցեսների ինտենսիվացումը տանում են դեպի ազգամիջյան հաղորդակցման լեզվի պահանջմունքի անշեղ աճ։

Մեր երկրում ազգամիջյան հաղորդակցման ասպարեզում կարևոր դեր խաղացին նաև ժողովրդագրական գործոնները։ Վերջին մարդահամարի տվյալներով, 1979 թվականի սկզբին մեր երկրի բնակչությունը կազմում էր 262 միլիոն մարդ, որից ազգությամբ ռուսների թիվն անցնում էր 137 միլիոնից։ 153,5 միլիոն մարդ ռուսերենն անվանել են որպես իրենց մայրենի լեզու։ Հետևաբար, 16,3 միլիոն ոչ ռուս ազգության մարդիկ ռուսերենը համարում են մայրենի լեզու։ Բացի դրանից, ոչ ռուս ազգության 61,3 միլիոն մարդ ռուսաց լեզուն անվանել են մայրենի լեզվից հետո երկրորդ լեզու, որին ազատ տիրապետում են։ Այսպիսով, 1979 թվականին մեր երկրում կար ռուսաց լեզվին ազատ տիրապետող 214 միլիոն մարդ, որը կազմում էր ՍՍՀՄ բնակչության ընդհանուր թվաքանակի 82 տոկոսը (տե՛ս Население СССР. М., Политиздат, 1983, с. 127, 131)։ Անկասկած, այսօր այդ թիվն աճել է։

Հայտնի է, որ լեզուները, ինչպես և իրենք՝ ժողովուրդները, մեր երկրում օժտված են հավասար իրավունքներով, որոնք երաշխավորված են ՍՍՀՄ սահմանադրությամբ և հաստատված ՍՄԿԿ ծրագրով։ Ռուսերենի՝ որպես ՍՍՀՄ ժողովուրդների ազգամիջյան հաղորդակցման լեզվի, առանձնահատկություններից մեկն այն է, որ վերջինս դուրս չի մղում, իր մեջ չի ձուլում մյուս լեզուները, այլ գործում է նրանց հետ միասին՝ կատարելով իր սեփական հասարակական ֆունկցիաները։ Դրանք նախ և առաջ ընդգրկում են միջհանրապետական հասարակական-քաղաքական, տնտեսական, գիտական, մշակութային և այլ կապերի բնագավառները։

Ռուսաց լեզուն բոլորի կողմից ընդունված է սովետական բանակում, տրանսպորտում և միջհանրապետական կապերի այլ ոլորտներում։ Միաժամանակ միութենական հանրապետություններից յուրաքանչյուրում ռուսաց լեզուն տեղական ազգային լեզուների հետ միասին բանավոր խոսքում օգտագործվում է որպես հաղորդակցման ու փոխըմբռնման միջոց տվյալ հանրապետության տարածքում ապրող տարբեր ազգերի ու ազգությունների ներկայացուցիչների միջև։ Ռուսերենով են հաղորդակցվում ոչ միայն ոչ ռուս ժողովուրդների ներկայացուցիչները ռուսների հետ, այլև ոչ ռուս շատ ժողովուրդներ միմյանց հետ։

Սովետական հասարակական-քաղաքական և տնտեսական կարգի առանձնահատկությունները պայմանավորել են մեր երկրի զանազան ազգերի ու ազգությունների փոխադարձ սերտ հաղորդակցման անհրաժեշտությունը՝ սկսած բազմազգ սոցիալիստական պետության՝ Սովետական Միության, կազմավորման առաջին իսկ տարիներից։ Երկրի ինդուստրացման խնդիրները, առաջին հնգամյակների վիթխարի կառույցների, հզոր ու գերհզոր էլեկտրակայանների, գործարանների, երկաթուղիների շինարարությունը՝ այս ամենը պահանջում էր միավորել ՍՍՀՄ-ի զանազան վայրերի մեծ թվով մարդկանց ջանքերը, իրականացնել մասնագետների լայն փոխանակում։ Տասնյակ ու հարյուր հազարավոր մարդիկ, գերազանցապես երիտասարդներ, սեփական նախաձեռնությամբ բնակություն են մեկնում արդյունաբերական խոշոր կառույցների և խոպան հողերի յուրացման շրջանները։ Օրինակ, Կարակումի ջրանցքը կառուցել են 32 ազգությունների ներկայացուցիչներ, իսկ Կրեմենչուգի և Նուրեկի ՀԷԿ-երը՝ 41 ազգությունների ներկայացուցիչներ։ Մեր երկրի բազմաթիվ ժողովուրդներ իրենց ներկայացուցիչներին ուղարկեցին Բայկալ-ամուրյան մայրուղու շինարարություն։ Հայաստանում այդպիսի ինտերնացիոնալ կառույցներ դարձան Արփա—Սևանը, Իջևան—Հրազդանը, Երևանի մետրոպոլիտենը և այլն։ Միանգամայն բնական է, որ առանց ազգամիջյան հաղորդակցման լեզվի՝ այդ բազմազգ աշխատավորական կոլեկտիվները չէին կարողանա նորմալ գործել և հաջողությամբ կատարել իրենց առջև ծառացած խնդիրները։

ՍՍՀՄ ժողովուրդների կյանքում նկատվում է ռուսաց լեզուն ուսումնասիրելու և ազատ տիրապետելու անհաղթահարելի ձգտում։ ՍՄԿԿ ծրագրում այդ մասին ասված է. «Այսուհետև էլ կապահովվի մայրենի լեզուների ազատ զարգացումը և ՍՍՀՄ բոլոր քաղաքացիների կողմից դրանց իրավահավասար օգտագործումը։ Միաժամանակ իրենց ազգության լեզվի հետ միասին ռուսաց լեզվին տիրապետելը, որը սովետական մարդկանց կողմից կամավոր ընդունվել է որպես ազգամիջյան շփման միջոց, ընդլայնում է գիտության, տեխնիկայի, հայրենական և համաշխարհային կուլտուրայի նվաճումներին հաղորդակցվելու հնարավորությունը» (ՍՄԿԿ ծրագիրը, էջ 61)։ Ամենուրեք ռուսաց լեզուն ուսումնասիրելու բնակչության բնական ցանկությամբ է պայմանավորվել բոլոր միութենական հանրապետությունների դպրոցական ծրագրերի մեջ այն որպես ուսումնական առարկա մտցնելու հարցը։ 1938 թվականից ռուսաց լեզուն դասավանդվում է միջնակարգ ուսումնական հաստատություններում։ Այդ ժամանակից ի վեր ավելացվել են հատկացումները ուսուցիչներ պատրաստելու, դասագրքեր լույս ընծայելու և ռուսաց լեզվի դասավանդման մեթոդիկան կատարելագործելու նպատակով։

Ոչ ռուս ժողովուրդների՝ ռուսաց լեզվին տիրապետելու գիտակցական ձգտման շնորհիվ ազգային հանրապետությունների տարածքում զարգացել է ներդաշնակ երկլեզվությունը (բիլինգվիզմը), այսինքն՝ փոփոխակի կերպով (նայած գործածության ոլորտին և սոցիալական այլ գործոններին) ազգային լեզվի հետ միասին ռուսաց լեզվի գործածումը բնակչության կողմից։ Երկլեզվությունը մեր երկրում այժմ կրում է ընդհանուր, համատարած բնույթ։ Դա առաջադիմական երևույթ է, որը նպաստում է եղբայրացած ժողովուրդների տնտեսական ու մշակութային կյանքի շատ պրոբլեմների լուծմանը։ Այդ պրոցեսն իր արտացոլումն է գտնում նաև գեղարվեստական ստեղծագործության ոլորտում, լեզվի հետ անխզելիորեն կապված նրա այնպիսի մի բնագավառում, ինչպիսին է գրականությունը։ Այսօր ՍՍՀՄ ժողովուրդների շատ գրողներ ստեղծագործում են մայրենի լեզվով և ռուսաց լեզվով։

Կապիտալիստական աշխարհի գաղափարախոսներն ու պրոպագանդիստները, այդ թվում և տարբեր երանգի բուրժուական նացիոնալիստներ, հերյուրանքներ են տարածում Սովետական Միությունում «լեզվական իրավիճակի» մասին։ Այսպես, «Սովետական լեզվական պլանավորումը. նպատակները, արդյունքները և նվաճումները» բազմանշանակ վերնագիր կրող կեղծարարական հրապարակման հեղինակ Ջ. Պուլը հայտարարում է, որ սովետական կառավարությունը իրականացնում է այնպիսի քաղաքականություն, որի պայմաններում, իբր, «փոքր ազգերի ու ազգությունների հարյուրավոր լեզուներ... աստիճանաբար կծերանան ու կմեռնեն» (տե՛ս Развитие национальных отношений в СССР. М., Политиздат, 1986, с. 159))։ Նա անտեսում է այն իրողությունը, որ սոցիալիզմի պայմաններում ինքնավար հանրապետությունների, մարզերի ու օկրուգների ժողովուրդների լեզուները շարունակում են զարգանալ իրավահավասարության ու փոխհարստացման հիման վրա։ Մեր հակառակորդները պնդում են, որ ՍՍՀՄ-ում ազգային լեզուները «ռուսականացվում» են։ Օրինակ, Հ. Զիմոնը (ԳՖՀ) գրում է, որ «ոչ ռուսերեն լեզուների վրա գործադրվող ճնշումը նրանց ֆունկցիաները սահմանափակելու տեսակետից չի նվազում»։ Ռ. Փայփսը հավատացնում է, որ «ապագայում ՍՍՀՄ-ում կմնան միայն ռուսաց լեզուն, ռուսական ավանդույթներն ու սովորույթները»։ Իսկ իրականում ի՞նչ է կատարվում։ Սովետական հանրապետությունների բոլոր ռուսական դպրոցներում պարտադիր դասավանդվում է նաև բուն ազգության լեզուն։ Այբբենարանները հրատարակվում են մեր երկրի ազգերի ու ազգությունների 90 լեզուներով։ Յուրաքանչյուր հանրապետությունում բուն բնակչության լեզվի հետ միասին լայնորեն օգտագործվում են նաև ուրիշ լեզուներ, որոնցով խոսում է տեղական բնակչությունը։ Ուկրաինայի, Հայաստանի, Վրաստանի և այլ հանրապետությունների դպրոցներում ուսուցումը տարվում է մի քանի լեզուներով։

ՍՍՀՄ ժողովուրդների լեզուների ու գրականությունների փոխներգործության առավել նշանակալի դրսևորումներից է թարգմանությունների իրականացումը ազգային լեզուներից ռուսաց լեզվի և հակառակը։ Ռուսերեն թարգմանությունների շնորհիվ ազգային գրականությունների լավագույն նմուշները մտնում են ՍՍՀՄ ժողովուրդների ընդհանուր գրական գանձարանը և այդպիսով հնարավորություն ստանում ստեղծագործական ներգործություն ունենալու մյուս ժողովուրդների գրականությունների վրա, իսկ դրանց հեղինակները, ինչպիսիք են Ա. Կոռնեյչուկը, Պ. Տիչինան, Ե. Չարենցը, Պ. Սևակը, Մ.

Տանկը, Ի. Դրուցն, Է. Մեժելայտիսը, Չ. Այթմատովը և ուրիշներ, որպես առաջին մեծության աստղեր, փայլում են ամբողջ բազմազգ սովետական գրականության երկնակամարում։ ՍՍՀՄ ազգային գրականությունները թարգմանությունների միջոցով ակտիվորեն փոխանակում են իրենց հոգևոր արժեքները և փոխադարձաբար հարստանում։ Ազգային լեզուներով են թարգմանվում դասական և ռուս սովետական գրականության լավագույն ստեղծագործությունները։ Գերազանցապես ռուսաց լեզվի շնորհիվ է, որ համաշխարհային գրականության դասականների մեծարժեք երկերը դառնում են բոլոր ազգերի ու ազգությունների սեփականությունը։ Դրա հետ միասին իրականացվում են ՍՍՀՄ ժողովուրդների գրական ստեղծագործությունների փոխադարձ թարգմանություններ։ Չ. Այթմատովը ռուսերենն անվանել է «նոր քաղաքակրթության» լեզու։ «Դա,— գրում է նա,— լեզու-կամուրջ է, որը պատմության մեջ առաջին անգամ միացրել է տարբեր ժողովուրդների գեղարվեստական ստեղծագործության ափերը, ժողովուրդներ, որոնք դեռևս ոչ վաղ անցյալում նույնիսկ չգիտեին միմյանց գոյության մասին»։

Ռուսաց լեզվի միջոցով իրականացվում են ազգային գրականությունների լավագույն ստեղծագործությունների թարգմանություններ աշխարհի շատ լեզուներով։ Նրա շնորհիվ անգլերեն, ֆրանսերեն, իսպաներեն, արաբերեն, գերմաներեն են թարգմանվել սովետահայ անվանի բանաստեղծներ Պարույր Սևակի, Սիլվա Կապուտիկյանի, Գևորգ Էմինի ստեղծագործությունները։ ՄԱԿ-ի գլխավոր ասամբլեայի նիստերից մեկում նրա նախկին գլխավոր քարտուղար Կուրտ Վալդհայմը քննարկվող հրատապ պրոբլեմի կապակցությամբ բերել է սովետահայ բանաստեղծ Գևորգ Էմինի բանաստեղծությունը ռուսերենից կատարված անգլերեն թարգմանությամբ.

Երգը զենքի պես զգույշ գործածիր,
Երբ խառն է դարը.
Նույն արճճից են ձուլում, իմացիր,
Գնդակն ու... տառը։

Ռուսական մշակույթի, ռուսաց լեզվի ու գրականության ակտիվ պրոպագանդիստներ էին մեծ լուսավորիչ Խաչատուր Աբովյանը, հիանալի բանաստեղծ ու հասարակական գործիչ Հարություն Ալամդարյանը, ականավոր հրապարակախոս և գիտնական Ստեփանոս Նազարյանցը, անվանի մանկավարժ Սեդրակ Մանդինյանը։ Հատկապես բազմակողմանի է եղել Խ. Աբովյանի գործունեությունը, որը կազմել է ոչ միայն «Նոր տեսական և գործնական քերականութիւն ռուսաց վասն հայոց» ձեռնարկը (1838—39 թթ.), որտեղ առաջին անգամ համակողմանիորեն հաշվի են առնված ռուսաց լեզուն հայերին դասավանդելու առանձնահատկությունները, այլև ստեղծել է ռուս-հայերեն առաջին զուգադրական քերականությունը։ Նա կազմել է նաև ռուս գրականության առաջին քրեստոմատիան։

Ռուս մեծ ժողովրդի լեզվի, արվեստի ու գրականության կրքոտ ջատագովներ են եղել հայ անվանի հեղափոխական-լենինյաններ Ստ. Շահումյանը, Ս. Սպանդարյանը, Բ. Կնունյանցը, Ա. Մյասնիկյանը և շատ ուրիշներ։

Հայաստանում ռուսաց լեզվի ուսումնասիրումը սիստեմատիկ ու նպատակասլաց բնույթ ստացավ սովետական կարգերի հաստատումից հետո։ Ներկայումս մեր հանրապետության լուսավորության բնագավառի աշխատողները հնարավոր ամեն ինչ անում են ռուսաց լեզուն ավելի լավ ու արդյունավետորեն ուսուցանելու համար։ Այս կապակցությամբ նրանց առջև լուրջ խնդիրներ են դրվել «Հանրակրթական և պրոֆեսիոնալ դպրոցի ռեֆորմի հիմնական ուղղություններով»։ Այնտեղ մասնավորապես նշված է. «Լրացուցիչ միջոցներ ձեռնարկել բարելավելու մայրենի լեզվի հետ մեկտեղ ռուսաց լեզուն սովորելու պայմանները... Ռուսաց լեզվին ազատ տիրապետելը պետք է նորմ դառնա միջնակարգ ուսումնական հաստատություններն ավարտող երիտասարդության համար»։

Արդեն տասը տարի է, ինչ Հայաստանում գործում են ռուսաց լեզվի խորացված ուսուցմամբ միջնակարգ դպրոցներ, որոնց թիվը հասնում է մոտ հարյուրի։ Նրանցում ուսուցումը տարվում է հատուկ ուսումնական պլանով, որի համաձայն 1—10-րդ դասարաններում ռուսերենի դասավանդումը հասցվեց 2054 ժամի, որը սովորական դպրոցներից 558 ժամով ավելի է։ Քիչ աշխատանք չի տարվել, որ այդ դպրոցներն ապահովվեն փորձառու, բանիմաց ուսուցիչներով, այնպիսի մանկավարժներով, որոնք ունակ լինեն աշակերտներին տալ առարկայական խոր ու կայուն գիտելիքներ։ Ինչպես ցույց է տալիս անցած ժամանակը, ռուսաց լեզվի խորացված ուսուցմամբ դպրոցների սովորողները ցուցաբերում են գիտելիքների պատշաճ մակարդակ։

Մայրաքաղաքի համանման դպրոցների 367 կաբինետներ ունեն բանավոր և գրավոր խոսքի զարգացման համար լրացուցիչ նյութեր, դիաֆիլմեր, տեխնիկական միջոցներ և այլն։

ՍՍՀՄ ժողովուրդների կողմից ռուսաց լեզվին հմտորեն տիրապետելը, անշուշտ, մեծապես առնչվում է կուսակցության ու կառավարության ներկայիս կուրսի՝ վերակառուցման և արագացման հետ, այն կնպաստի նաև մարդկային գործոնի ակտիվացմանը։ Այս կարևոր խնդրի կատարման առաջին օղակը հանրակրթական դպրոցն է, նրա տքնաջան մարտիկը՝ ժողովրդական ուսուցիչը։

**Վ. ԲԺԻԿՅԱՆ**
**ԵՊՀ-ի ռուսաց լեզվի ամբիոնի ավագ դասախոս**

*Մենք Հոկտեմբերի ծնունդ ենք*

# ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅՈՒՆԸ՝ ԻՄ ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹՅՈՒՆԸ

ՀԱՃԱԽ ԵՄ ԴԻՄՈՒՄ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԽՈՍՔԵՐԻՆ, որը դեռ սոցիալ-դեմոկրատական կուսակցությունը հիմնելուց առաջ ասում էր. «... կարելի էր, ձևափոխելով հայտնի դարձվածքը, ասել՝ տվեք մեզ հեղափոխականների կազմակերպություն, և մենք շուռ կտանք Ռուսաստանը»։ Հենց այդպիսի կազմակերպություն դարձավ բոլշևիկների կուսակցությունը, որը ժողովրդական զանգվածներին տարավ դեպի մեծ Հոկտեմբերը։ Հեղափոխական գաղափարների ազդեցության ներքո Հայաստանի աշխատավորները, ինչպես և ցարական Ռուսաստանի բոլոր ազգային ծայրամասերի ժողովուրդները, պայքարի ելան հանուն ազատության, հավասարության, եղբայրության ու սոցիալական առաջընթացի վսեմ իդեալների։ Եվ ես երջանիկ եմ, որ ինձ վիճակված էր լինելու այդ իրադարձությունների մասնակիցը։ Այն օրերի հուշերը տակավին թարմ են ինձ մոտ։

... Երբ սկսվեց 1917 թ. փետրվարյան հեղափոխությունը, ես սովորում էի Թիֆլիսի Ներսիսյան դպրոցում։ Ինքնակալության անկման լուրը ցնցել էր ամբողջ քաղաքը։ Ամենուրեք լսվում էր այդ օրերին ամենատարածված բառը՝ «ազատություն»։ Այդուհանդերձ, տրամադրությունները խիստ բազմազան էին. ոմանք ցնծում էին, մյուսները՝ զայրանում, երրորդները՝ տարակուսում։ ... Տակավին պատանի՝ ես այն ժամանակ, բնականաբար, դեռ կյանքի հստակ կողմնորոշիչներ չունեի և ինձ համար դժվար էր գլուխ հանել տեղի ունեցող բարդ իրադարձություններից։ Բայց հոգիս պարուրված էր ինչ-որ հատուկ, ոչ մի բանի հետ չհամեմատվող ոգևորությամբ, ինչ-որ նորի, լուսավորի ակնկալիքով... Ես ջանում էի հեղափոխությունը թերթերից ըմբռնել։ Իսկ դրանք այնքան խայտաբղետ էին՝ բոլշևիկյան, մենշևիկյան, կադետական... Ցավոք, այն ժամանակ ինձ այնպիսի մի մարդ չհանդիպեց, որն օգներ ըմբռնելու ծավալված քաղաքական պայքարի ողջ իմաստը։

Հավանորեն, աշխատավոր ընտանիքից ելածի բնազդն ինձ մղեց բոլշևիկների կողմը։ Եվ շուտով, տեղեկանալով իշխանությունների կողմից Թիֆլիսի Ալեքսանդրյան զբոսայգում աշխատավորների խաղաղ միտինգի գնդակոծության մասին, ես հասկացա, որ ազատության ու դեմոկրատիայի վերաբերյալ մենշևիկների՝ այդ ամոթալի գործողության գլխավոր մեղավորների, ամեն մի բարբաջանք սոսկ միջոց է նրանց հակաժողովրդական, հակահեղափոխական քաղաքականությունը քողարկելու համար, որ միայն բոլշևիկներն են պայքարում լայն մասսաների իսկական երջանկության համար։

Այսպիսի տրամադրություններով էլ ես վերադարձա Ղարաբաղիայի գավառի իմ հայրենի Հաջիղարա գյուղը (այժմ՝ Լեռնապատ), այդպես էլ չավարտելով ուսումը։ Ծանր, սովի տարի էր, և ես պետք է օգնեի հորս՝ պահելու ընտանիքը։ Հենց գյուղում էլ ես ստեղծեցի երիտասարդական կազմակերպություն։ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակի լուրը ոգեշնչեց մեզ բոլորիս։

Որպես բոլշևիկի իմ ձևավորումը ես կապում եմ գյուղական ուսուցչուհի Գայանե (Ժենյա) Արեշյանի անվան հետ, որը, ինչպես պարզվեց, բոլշևիկ էր և Հաջիղարա էր եկել հեղափոխական աշխատանք տանելու նպատակով։ Մի փոքր ավելի ուշ, իմանալով երիտասարդության հետ իմ աշխատանքի մասին, նա առաջարկեց գյուղում ընդհատակյա կուսկազմակերպություն ստեղծել։ Մենք սկսեցինք մարդիկ ընտրել։ Եվ շուտով, 1919 թ. նոյեմբերին Ղարաբաղիայի բոլշևիկների օգնությամբ այդպիսի կազմակերպություն ստեղծվեց։ Դա իմ կյանքի ամենանշանակալից իրադարձությունը եղավ։ Գայանե Արեշյանին ընտրեցին բյուրոյի նախագահ, ինձ՝ պատասխանատու

Հայտնի է նույնիսկ գրքի լույս տեսնելու ամսաթիվը՝ 1919 թվականի մարտի 17-ը: Առաջին օրինակը Ռիդը նվիրել է ոչ քիչ արիություն և համառություն ցուցաբերած իր հրատարակչին՝ հետևյալ մակագրությամբ. «Իմ հրատարակիչ Հորացիուս Լիվերայտին, որը քիչ էր մնում սնանկանար գիրքս տպագրելիս»:

Մայիսի սկզբին Մոսկվայում ստացան Ռիդի գիրքը և հանձնեցին Կրեմլ: Հեղափոխական իրադարձությունների ճշմարտացի արտացոլմամբ գիրքն այն աստիճան դուր էր եկել Լենինին, որ գրեց դրա առաջաբանը: Այն տպագրվեց բոլոր հետագա հրատարակություններում: Նադեժդա Կոնստանտինովնա Կրուպսկայան պարզապես ապշած էր, որ նման մի գիրք կարող էր գրել ամերիկացին: «Դա գրեթե հրաշք է»,— ասել է նա:

«Խիստ հետաքրքրությամբ և չթուլացող ուշադրությամբ կարդալով Ջոն Ռիդի «Տասը օր, որ ցնցեց աշխարհը» գիրքը, ես ամբողջ հոգով այդ երկը հանձնարարում եմ բոլոր երկրների բանվորներին: Ես կուզենայի այդ գիրքը տեսնել տարածված միլիոնավոր օրինակներով և թարգմանված բոլոր լեզուներով...»,— գրել է Վ. Ի. Լենինը այդ գրքի առաջաբանում (ԵԼԺ, հ. 40, էջ 58):

Ռիդը Ռուսաստան վերադարձավ արդեն որպես այն ժամանակի ամենահանրաճանաչ գրքի հեղինակ: Նա մի քանի անգամ հանդիպումներ է ունեցել, զրուցել Լենինի հետ: Նրա մեջ հասունանում էր մի նոր գիրք գրելու պլանը՝ «Կոռնիլովից մինչև Բրեստ-Լիտովսկ»: Ենթադրվում էր, որ նոր գիրքը կլինի ինքնուրույն, բայց «Տասը օրերի...» հետ միասին կվերակենդանացնի հեղափոխության միասնական ու մասշտաբային պատկերը: Հավաքելով նշանակալի նյութ, Ռիդը որոշեց վերադառնալ Ամերիկա: Բայց այդ ժամանակ իր երկրում ծավալված քաղաքական իրադարձությունները խախտեցին Ռիդի պլանները: Անլեգալ ճանապարհից բացի հայրենիք վերադառնալու այլ ուղի նա չուներ: Նրան հաջողվել էր գաղտնի ընկնել դեպի Շվեդիա գնացող ֆիննական մի նավ: Բայց Աբո նավահանգստում ոստիկանությունը ձերբակալեց Ռիդին՝ բռնագրավելով նրա բոլոր թղթերն ու փողերը: Ամերիկայի ճանապարհը, համենայն դեպս ազատ ճանապարհը, փակ էր նրա համար: Միակ ելքը մնում էր փորձել վերադառնալ Ռուսաստան: «Արեք ինչ հնարավոր է՝ ինձ օգնելու համար»,— գրում էր Ռիդը ֆիննական բանտից սովետական դիվանագետ Գուկովսկուն: Ռիդին դուրս կորզեցին բանտից. նա վերադարձավ Ռուսաստան: 1920 թվականով նշված իր վերջին հոդվածում Ջոնը գրում է. «Հակառակ ամեն ինչին, հեղափոխությունն ապրում է, վառվում է պայծառ բոցով, և նրա լեզուները լիզատում են եվրոպական հասարակության դեռևս հրադիմացկուն ճգնաժամը»:

Լենինը շատ էր սիրում ու գնահատում զրույցներն ու հանդիպումները Ջոն Ռիդի հետ: Սակայն Վլադիմիր Իլյիչը հանդիմանում էր Ռիդին այն բանի համար, որ նա չի խնայում իր առողջությունը, շարունակ գերհոգնում է: «Մի մարդ, որի մեկ երիկամը հեռացված է,— նախազգուշացնում էր Իլյիչը,— պետք է ավելի խնամքով վերաբերվի իր առողջությանը»:

Վ. Ի. Լենինի մասին Կոմինտերնի II կոնգրեսի պատգամավորների կարծիքների գրքում Ռիդը գրել է. «Լենինն այնքան հասարակ է, այնքան մարդկային և, միևնույն ժամանակ, բոլորից ավելի հեռուն տեսնող ու անսասան: Լենինը պատմության լոկոմոտիվն է»:

Ինչի մասին էլ որ գրեր Ռիդը, գլխավոր թեման միշտ լինում էր սովետական իշխանության ճակատագիրը, իսկ հետևաբար, հեղափոխության ճակատագիրը: «Սովետական Ռուսաստանն այսօր» իր վերջին անավարտ հոդվածում նա գրում էր. «... այնտեղ, մայրաքաղաքից համեմատաբար հեռու, ես հայտնաբերեցի, որ սովետական իշխանությունը խորը թափանցել է ժողովրդի կյանքի մեջ, որ նոր հասարակարգն արդեն հիմնավորապես ամրապնդվել է ու դարձել սովորական...»:

1920 թվականի ամռանը Կոմինտերնի մի խումբ աշխատողներ, այդ թվում և Ջոն Ռիդը, Մոսկվայից մեկնեցին Բաքու, որտեղ պետք է կայանար Արևելքի ժողովուրդների I համագումարը: Ռիդն այդ համագումարի կազմակերպիչներից մեկն էր: Նրա համար այդ ուղևորությունը շատ մեծ նշանակություն ունեցավ: Հեղափոխական շարժումն Արևելքում արտասովոր կերպով աճել էր, և նա ցանկանում էր լինել այդ աճի ականատեսն ու վկան:

Բաքվում ունեցած իր ելույթում Ռիդն ասաց. «Մի հավատացե՛ք ամերիկյան կապիտալիստների խոստումներին: Կա ազատության միայն մեկ ճանապարհ: Միավորվեցե՛ք ռուս բանվորների ու գյուղացիների հետ, որոնք տապալեցին իրենց կապիտալիստներին, և որոնց կարմիր բանակը հաղթեց օտարերկրյա իմպերիալիստներին: Հետևեցե՛ք Կոմունիստական Ինտերնացիոնալի կարմիր աստղին»:

Համագումարն ավարտվելուց հետո Ռիդը շտապում էր Մոսկվա, ուր որտեղ որ է պետք է գար նրա Լուիզան: Այդպես է եղել միշտ. հանդիպմանը նախորդող օրերին նա նրանից բացի ուրիշ ոչ մի բանի մասին չէր կարող մտածել: Ռիդի կյանքում հանկարծակի փոփոխություններ շատ են եղել, և Լուիզան հազվադեպ էր թողնում նրան մենակ: Բայց ավելի շեշտակի ու դժվարին շրջադարձ, քան Ռուսաստանն էր, նա չէր ունեցել: Լուիզան այստեղ էլ նրա կողքին էր:

Նա իր Լուիզայի հետ շատ էր թափառում Մոսկվայում, եղել են Լենինի մոտ, Մեծ թատրոնում լսել «Իշխան Իգորը»: Մոտավորապես երկու շաբաթ հետո նա անկողին ընկավ՝ հիվանդանալով գրիպով, ինչպես ենթադրում էին բժիշկները: Բայց շուտով հասկացան, որ դա որովայնային տիֆ է, և նրան փոխադրեցին Մարիինյան հիվանդանոց՝ լավագույն բժիշկների հսկողության տակ: Վ. Ի. Լենինի թղթերի մեջ հայտնաբերվել են բժշկական մարմինների հաղորդումները Ջոն Ռիդի հիվանդության ընթացքի բոլոր փոփոխությունների մասին:

Ջոն Ռիդը մահացավ հոկտեմբերի 17-ի լույս գիշերը՝ ծննդյան օրից երեք օր առաջ: Մահից քիչ առաջ նա գրել է. «... Ես ուզում էի գրել նոր «Մարդկային կատակերգություն»: Դրա փոխարեն ես ստիպված եղա ապրել այդ կատակերգությունը»:

Ամբողջ Մոսկվան ուղեկցում էր բոցաշունչ կոմունիստ, «ամերիկյան լրագրության հանրաճանաչ արքայազն» Ջոն Ռիդին Միությունների տնից մինչև Կարմիր հրապարակ, որտեղ նա հանգչում է Հոկտեմբերյան հեղափոխության այն հերոսների գերեզմանների կողքին, որոնց գովերգել է նա:

ԼԻԼՅԱ ՍԱՐԳԻՋՈՎԱ



# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԳՐԱՀՐԱՏԱՐԱԿԻՉՆԵՐԸ՝ ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ ՀՈԲԵԼՅԱՆԻՆ

ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ մեծ հեղափոխության 70-ամյակը հանրապետության հրատարակչությունները նշանավորում են մի շարք արժեքավոր գրքերով: Ստորև ներկայացնում ենք դրանցից մի քանիսը:

«Հայաստան» հրատարակչությունը լույս է ընծայել ՀՍՍՀ ԳԱ ակադեմիկոս Գ. Ղարիբջանյանի «Մեծ Հոկտեմբերը պրոլետարական ինտերնացիոնալիզմի հաղթանակն է» աշխատությունը: Այն նվիրված է հեղափոխության համաշխարհային պատմական նշանակությանը, համաշխարհային-հեղափոխական պրոցեսի զարգացման վրա նրա ազդեցությանը: Գրքում հեղինակն անդրադարձել է նաև բուրժուական ռեֆորմիստական և ռևիզիոնիստական տեսակետների քննադատությանը: Հրատապ մի շարք հարցեր են արծարծվում «ՍՄԿԿ XXVII համագումարը համաշխարհային հեղափոխական պրոցեսի մասին» գլխում:

Հեղափոխության առաջնորդ Վ. Ի. Լենինը բազմաթիվ թելերով էր կապված Ռուսաստանում ապրող տարբեր ժողովուրդների հեղափոխական գործիչների հետ: Դեռ դարասկզբին հայազգի շատ երիտասարդներ իրենց կյանքի իմաստը գտան բոլշևիկյան կուսակցության մեջ՝ անդամագրվելով նրան: Վլադիմիր Իլյիչը խոր ակնածանքով է խոսել նրանց մասին և բարձր գնահատել հայ ժողովրդի զավակների մասնակցությունը երկրում սովետական իշխանություն հաստատելու մեծ առաքելությանը: Այս հարցերն իրենց ամփոփումն են գտել հրատարակչության լույս ընծայած «Վ. Ի. Լենինը Հայաստանի և հայ ժողովրդի մասին» ժողովածուում: Գրքում, որ բաղկացած է չորս մասից, զետեղված են Հայաստանի և հայ հեղափոխական գործիչների վերաբերյալ լենինյան փաստաթղթերը:

Պատմական գիտությունների թեկնածու Ե. Սահակյանի «Երիտասարդական հեղափոխական շարժումը XIX դարի վերջին և XX դարի սկզբին» (ռուսերեն) գրքում հեղինակը բացահայտում է երիտասարդության շրջանում մարքսիստական գաղափարների ներթափանցումն ու հաստատումը: Աշխատության մեջ երիտասարդության տարերային հուզումները գիտակցված հեղափոխական շարժման վերաճելու առանձնահատկությունները տրված են Ռուսաստանի սոցիալ-տնտեսական և քաղաքական կացության լայն ֆոնի վրա:

Ալեքսանդր Ռուսի «Երեք խնձոր» վեպը, որ թարգմանաբար լույս է տեսել ռուսերենից, նվիրված է պրոֆեսիոնալ հեղափոխականներ Լյուդվիգ և Բոգդան Կնունյանցների քրոջը՝ 1903 թվականից կուսակցության անդամ, Ռուսաստանի ու Անդրկովկասի հեղափոխական շարժումների մասնակից Փառանձեմ (Փառո) Կնունյանցի կյանքին և գործին: Նրան մոտիկից ճանաչում էին Ստ. Շահումյանը, Ի. Ֆիոլետովը և Բաքվի կոմունայի այլ գործիչներ: Հեղինակը հայտնի փաստերի հետ միասին օգտագործել է նաև բազմաթիվ նորահայտ նյութեր, որոնք ավելի են ամբողջացնում հերոսուհու կերպարը:

ՀՍՍՀ գիտությունների ակադեմիայի հրատարակչությունը տպագրել է «Հոկտեմբերյան հեղափոխությունը և երիտասարդությունը» (ռուսերեն, հեղինակային կոլեկտիվ) գիրքը: Հոդվածների այս ժողովածուում զետեղվել են Երևանում գումարված «Հոկտեմբերյան հեղափոխությունը և երիտասարդությունը» համամիութենական գիտական կոնֆերանսի նյութերը: Դրանց հեղինակները երիտասարդական հեղափոխական շարժումների պատմության գծով երկրի առաջատար մասնագետներ են և ներկայացնում են Մոսկվայի, Լենինգրադի, միութե-